A. Banuch'yan, Եղիշեի Վարդանանց պատերազմի հնագույն պատառիկի նոր վերծանությունը [A New Analysis of the Oldest Fragment of Eghishe's *Vardanants' War*], from *Banber Matenadarani*, volume 18 (2008), pp. 217-257, in 42 pdf pages.

**ԱՐՇԱԿ ԲԱՆՈՒՉՅԱՆ**

# ԵՂԻՇԵԻ «ՎԱՐԴԱՆԱՆՑ ՊԱՏԵՐԱԶՄԻ» ՀՆԱԳՈՒՅՆ ՊԱՏԱՌԻԿԻ ՆՈՐ ՎԵՐԾԱՆՈՒԹՅՈՒՆԸ

*Եղիշեի «Վասն Վարդանայ եւ Հայոց պատերազմին» երկի հնագույն պատառիկի առաջին հրապարակման համար՝ ինչպես արդեն նշել էինք մեր նախորդ հոդվածում*[1]*, պարտական ենք մեծանուն հայագետ Ֆ. Կ. Կոնիբերին*[2]*: Լիոնի Քաղաքային գրադարանում 17 համարի ներքո պահպանվող ձեռագիր Պատարագամատույցում (Անարզաբա, 1314 թ.) որպես պահպանակ օգտագործված Եղիշեի այս պատառիկները հիրավի կարող են առ այսօր հայտնի բոլոր պատառիկներից հնագույնը համարվել: Պատառիկի չորս էջերի վերծանության վերջում առավել աչքի ընկնող տարբերությունները շարադրելուց հետո հեղինակը հետևյալ եզրակացություններն է անում՝* «Հատակոտորքս որչափ ալ պակասաւոր են՝ կ՚ապացուցանեն որ Եղիշէի բնագիրը յառաջ շատ տարբեր էր անկէ՝ զոր այսօր տպագրութիւնք մեր առջեւ կը դնեն: ... Համառօտ ըսելով հատակոտորքս կը ցուցանեն՝ բաց ի մանր տարբերութիւններէն՝ նաեւ զայն, որ հեղինակիս գործք պարունակող ձեռագիրք չափազանց կերպով կերպարանափոխ եղած ընդմիջարկութիւններ առած են՝ հաւանականօրէն Ժ. դարէն ետքը»:

*Այնուհետև այս հրապարակումը հիմք է դարձել բանասերների տարաբնույթ մեկնաբանությունների ու գնահատականների: Դարձել Եղիշեի պատմության ժամանակի, խմբագրումների զանազան տեսությունների փաստարկներից մեկը կամ հիմքը: Ըստ Գ. Խալաթյանի՝ պատառիկում պահպանված հատվածը կարող է լինել Եղիշեի նախնական բնագիրը՝* «որից օգտուել է Փարպեցին եւ որը Սեբէոսին (է. դար) էլ ծանօթ էր. յետոյ նա ենթարկուել է փոփոխութիւնների եւ նորից մշակուել՝ ըստ երեւութին, ո՛չ վաղ քան է. դարը»[3]: *Իսկ Ն. Ակինյանն առհասարակ համարում է, որ պատառիկի բնագիրը* «ձեռա-

---

[1] Եղիշեի վարդանանց պատերազմի նորահայտ պատառիկները. – «Բանբեր Մատենադարանի», հ. 17, էջ 261-287:

[2] **Ֆ. Կ. Կոնիբեր**, Եղիշեի պատմության հատակոտորք. – «Հանդէս Ամսօրեայ», 1893, թիվ 5, էջ 129-133: Ստորագրված է՝ «Փր. Կ. Կոնիբիր»:

[3] **Գ. Խալաթյանց**, Եղիշէի աղբիւրների առթիւ. – «Հանդէս Ամսօրեայ», 1895, թիվ 4, էջ 113-116:

գիրներէն պետք է առանձին խումբ մ՚ենթադրել, որք կը ցուցնեն ընդհանուր աղաւաղումներ Վարդանանց պատմութեան մէջ»[4]: *Ոմանք պատառիկի բնագիրը համարում են համառոտված, ոմանք խմբագրված կամ հավելված՝ ուշ շրջանի միջարկություններով, ուրիշներն «անխնամ օրինակ»: Իրարամերժ տեսակետների, ինչպես նաև «Վարդանանց պատերազմի» ձեռագրախմբի հիմք դարձած մագաղաթյա հնաբույր երկու թերթերն ու նրանցում պահպանված բնագիրն էլ ավելի արժեքավոր է դառնում նոր ընթերցումներով, որոնք վկայված չեն առ այսօր հայտնի որևէ ձեռագրով կամ տպագիր հրատարակությամբ: Այն հիրավի մի նոր լույս կարող է սփռել «Վարդանանց պատերազմի» բնագրի հետ կապված տեսակետների և 450-ական թվականների պատմական իրադարձությունների վրա: Սույն հրապարակման նպատակը, սակայն «Վարդանանց պատերազմի» բնագրագիտական քննությունը չէ, այլ միմիայն պատառիկի նոր վերծանությամբ բանասերների ուշադրությունը վերստին հրավիրել ի հայտ եկած չափազանց ուշագրավ բնագրային նոր տարընթերցումների վրա: Ուստի ավելորդ չհամարեցինք՝ երբեմն կրկնաբանելով վերծանվող հատվածները, ներկայացնել այն մանրամասնորեն[5]:*

*Ինչպես արդեն նշեցինք, Եղիշեի պատմության հնագույն այս մասունքի բնօրինակը Ֆ. Կոնիբերից հետո որեւէ ուսումնասիրության չի արժանացել, այլ միայն օգտագործվել է «Հանդեսում» հրապարակված թերի վերծանությունը: Ի տարբերություն պատառիկների, ձեռագրի նկարագրությունն ու Պատարագամատույցի բնագիրը հրապարակվել է նախ Հայր Հովսեփ վարդապետ Գաթրճյանի կողմից «Պատարագամատոյցք հայոց» արժեքավոր ուսումնասիրության մեջ[6]: Այնուհետեւ Ֆ. Մակլերը, ըստ երեւույթին ծանոթ չլինելով Հ. Գաթրճյանի նկարագրությանը, մի նոր նկարագրությամբ (միայն նկարագրությունը) հրատարակել է իր ցուցակում[7]: Ստորեւ ներկայացված բնկալ ձեռա-*

[4] **Ն. Ակինյան**, Եղիշէ, քննական ուսումնասիրութիւն. – «Հանդէս Ամսօրեայ», 1905, ԺԹ. տարի, էջ 332:

[5] Բնագրագիտական քննությանը կանդրադառնանք չհրապարակված պատառիկների լույս ընծայումից հետո:

[6] Հայր Յ. վրդ. Գաթրճեան, Պատարագամատոյցք Հայոց, «Քննական հրատարակութիւն մատենագրութեան եւ թարգմանութեան նախնեաց հայոց», հ Ա., Վիեննա, 1897թ.: Լինոնի թիվ 17 ձեռագիր Պատարագամատույցի նկարագրությունը տե՛ս էջեր 82-84:

[7] Ցուցակը կազմելիս՝ Ֆրեդերիկ Մակլերը բնկալ ձեռագիրը նկարագրել է, իսկ պահպանակները ոչ, արձանագրել է սոսկ պահպանակների գոյության փաստը: Frédéric Macler, Notices de manuscrites Arméniens ou relatifs aux Arméniens..., Revue des études Arméniennes, Tome II, Fascicule 2, Paris-1922: Ցուցակում պատառիկի նկարագրությունը գտնվում է 282 էջում եւ ընդամենը մեկ նախադասություն է՝ "Deux feuillets de garde en parchemin au début, et deux à la fin, recouverts d'écriture erkatagir" (բառացի թարգմանությամբ՝ «Երկու պահպանակ մագաղաթյա սկզբում, եւ երկուսը վերջում, երկաթագիր գրչությամբ»): Ֆ. Մակլերը ըստ երեւույթին ծանոթ չի եղել ոչ Հ. Գաթրճյանի «Պա-

*գրի նկարագրությունը կատարել ենք Մատենադարանի դրսի ժապավենների հավաքածուում պահպանվող Լիոնի թիվ 17 ձեռագրի միկրոֆիլմից[8]: Տեղ-տեղ, որոշ անհրաժեշտ նկարագրական տվյալներ քաղել եւ համադրել ենք Հ. Հ. Գաթրճյանի եւ Ֆ. Մակլերի նկարագրություններից:*

## Նկարագրություն բնկալ ձեռագրի

Պատարագամատոյց: 1314 թ.: *Վայրը*՝ Անարզաբա: *Գրիչ*՝ Նիկաւլայոս: *Կազմող, ստացող*՝ անհայտ: *Թերթեր*՝ 212[9]: *Նյութը*՝ թուղթ: *Մեծություն*՝ 17x12: *Գրություն*՝ միասյուն: *Գիր*՝ բոլորգիր: *Գրության տող*՝ 20: *Կազմ*՞ ?: *Աստառ*՝ ոսկեթել կտավ: *Մանրանկար, զարդագրեր, լուսանցազարդեր*՝ չիք:

Գրչության հիշատակարան՝ 208աբ – «*Փառք ամենաս[ուր]բ երրորդութեան հաւր և որդւոյ և հոգւոյն սըրբոյ ամէն:*

*Աստանաւր կամաւք և խնամաւք ամենազաւրին Ա[ստուծո]յ, յանկ ելեալ ս[ուր]բ մատեանս պատարագամատուցի, որ ունի ի յինքն բովանդակեալ զաղաւթս սուրբ քահանայապետից Ա[ստուծո]յ, զոր յիւրաքանչիւր ժամանակս արարեալ են խորհուրդ պատարագի: Արդ, եղև սա գրեալ ձեռամբ մեղաւոր եւ անարժան քահ[անայ]ի* Նիկաւլայոսի, *[յիշատակ ինձ], և ծնողացն իմոց, եւ եղբաւրն մերոյ* Յովաննիսի քահ[անայ]ի, *ի թուականիս Հայոց* ՉԿԳ (1314), *ի դղեակս Անարզաբա, ընդ հովանեաւ սրբոյ մաւրս լուս*//208բ//*ոյ տիրուհոյ եւ միշտ կուսին Մարիամու Ա[ստուա]ծածնիս, ի թագաւորութեանն* Աւշնի, *եւ ի քահանայապետութե[ան]ն տ[եառ]ն* Կոստանդեա, *եւ ի մերոյ եկեղեցոյս յառաջնորդութեան տ[եառ]նրս մերոյ* Յոհաննիսի *եպ[իսկոպոս]ի, որոյ Տ[է]ր Ա[ստուա]ծ պահեսցէ զսա հանապազ: Յիշեսջիք աղաւթիւք զսպասաւորս սրբոյ եկեղեցոյս եւ զքահանայս սուրբս,* զԿոստանդին *և զմիւս* Կոստանդին, *և* զԱնդրոնիկոս, *և* զԲասիլիոս, *և զմիւս* Բասիլիոս, *և* զՍտեփաննոս, *և զսարկաւագունս*՝ զՎասիլ, *և* զԹէոդորոս, *և* զՎարդան Սեւլենցի, *և* զՅակոբ, *և զամենայն հաւատացեալս Սրբոյ Երրորդութեան, որում փառք և զաւրութի[ւն] այժմ և յաւի-*

---

տարագամատոյցք Հայոց» արժեքավոր ուսումնասիրությանը, ոչ էլ Ֆ. Կ. Կոնիբերի հրապարակմանը: Լիոնի քաղաքային գրադարան իր մի այցելության ժամանակ (հավանաբար 1970-ական թվականներին) պատառիկը տեսել եւ գրադարանի համար մեկ անգամ եւս բովանդակությունը պարզել է Մատենադարանի փոխտնօրեն, երջանկահիշատակ Բ. Չուգասզյանը: Այս մասին ձեռագրի կազմի Ա. փեղկի կազմաստառին սոսնձված թղթի վրա գրված է "Les fragments coolés sur les plats de ce manuscrit sont partie de l'Histoire d'Elyssée, chroniqueur arménien du V-ème siècle. D'après B. Tchoukaszian. Sous-directeur de l'institut des manuscrits anciens de Matenadaran, à Erivan (Arménie)."

[8] Մատենադարան, Դրսի ժապավեն 483:

[9] Տեղ-տեղ թերթակալումը խառնված է:

*տեանս յաւիտենից, ամէն: Յիշեսջիք ի Ք[րիստո]ս և* գԹորոս երեց, *որ փոխեցաւ առ Ք[րիստո]ս: Եւ որ յիշէ զմեզ աղաւթիւք եւ զնա յիշեսցէ Ք[րիստո]ս Ա[ստուա]ծ ի յիւր միւսանգամ գալուստն, որ է աւրհնեալ յաւիտեան»*[10]*:*

Հիշատակագրություններ գրչի՝ 28բ – *«Ողորմե[ա]լ ի գերիս* Նիկալայոս *յերեսս անկեալ աղաչեմ զձեզ յիշեսջիք* ΧΩ*(Քրիստոս) ըզմեզ ի ս[ուր]բ և ի մաքրափայլ աղաւթս ձեր և զծնողսն մեր և Ա[ստուա]ծ զձեզ»:*

39ա - *«Բարեխաւսութ[եամ]բ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին ողորմեա Ք[րիստո]ս Ա[ստուա]ծ գրողի սորա* Նիկ[ալայոսի] *և ծնօղացն մերոց և որ զամենն ասէ»:*

64բ - *«Բարեխաւսութ[եամ]բ Ս[ուր]բ հաւրս մերոյ Բարսղի ողորմեա՛ Ք[րիստո]ս Ա[ստուա]ծ գրողի սորա* Նիկ[ալայոսի] *և ծնողացն մերոց. ամեն»:*

76ա - *«Ողորմեա՛ Ք[րիստո]ս Ա[ստուա]ծ գրողի սորա մեղաւորի»:*

105ա - *«Բարեխաւսութ[եամ]բ տիեզերաքարոզ հաւրըս մերոյ սըրբոյն Յոհաննու Ոսկիբերանին ողորմեա՛ Ք[րիստո]ս Ա[ստուա]ծ ամենայն հաւատացելոց և գրողի սորա և ծնողացն իմոց և ամենայն եղբարց անապատիս. ամէն»:*

141բ - *«Ով ս[ուր]բ քահանայք որք աղաւթեք ի ս[ուր]բ մատեանս յայս յիշեսջիք զարտասուաց արժանիս* զՆիկօլ *և դուք յիշեալ լիջիք ի Ք[րիստո]ս»:*

Հիշատակագրություններ ճետագայի՝

1ա, *էջի եզրերը խիստ քայքայուած – Յունարէն:*

*Բոլորգիր, «Հոգին ս[ուր]բ ի հօրէ և յորդոյ ոչ արարե[ա]լ, ոչ ստեղծե[ա]լ, այլ բխե[ա]լ»:*

*Բոլորգիր, «[Ամենայն] իրաւունք»:*

*Շղագիր, «Երանեալ է՞ այր որ ոչ գնաց ի խորհոտ:*

*Երկի՞նք պատմեն զփառս Ա[ստուծո]յ և զարարածսն:*

*Ես* ^(*խ[ա]չ[ատու]րս*) *սարկաւաք է, իմ հարն գնեց զայս գն[...՞]*

*Աստուածատուր երեցն [զհայրն ...՞]»:*

Պաճպանակների վրա՝

Աա – *հիշատակագրութիւններն ու գրչափորձերը վերից վար.*

*Ձախ անկյունում - «հ*^(*մր*) *17»;*

*Զանազան բոլորգիր եւ շղագիր գրչափորձեր, մի մասը ջնջված՝ «ա», «անպ», «Սարսեց», «Աստցան» եւ այլն: Ստորեւ ներկայացնում ենք դրանց ավելի*

[10] Հիշատակարանը ճրատարակել է նաեւ Մատենադարանիս երախտավոր տնօրեն, ակադեմիկոս **Լ. Ս. Խաչիկյանը** «ԺԴ. դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ» ճատորում, էջ 109-110: Լ. Ս. Խաչիկյանը հիշատակարանը նախընտրել է հիել Հ. Հ. վրդ. Գաթրճյանի նկարագրությունը: Զննայած՝ ըստ ամենայնի օգտագործել է Մատենադարանի «Դրսի ժապավենների» ճավաճածուում պաճպանվող Լիոնի թիվ 17 ձեռագիր Պատարագամատույցի միկրոֆիլմը (Դժ 483):

*ընդարձակ մասերը։*

Աբ – *«Ես առ Ա[ստուա]ծ կարդացի և Տ[է]ր լուաւ ինձ, ընդ երկ», «հաստեցա, հաստատեցաւ» եւ այլն։*

Բա – *«Եւ մի ոմն ի զինուորացն տիգաւ խոցեաց զնա և ել վաղվաղակի արիւն և ջուր և որ ետեսն վկայեաց և ճշմարիտ է վկայութիւն նորա»։*

*«Սարսեցին անասեղեն բնութիւնքն ի քէն և անխրամատելի պահեցին զսահմանս պոմանի իւրեանց»։*

*«Երկինք պ՟ս» եւ այլն։*

Բբ – *«Շատ մարդ կա ի ք[ա]հ[ա]ն[այացն] որ զպատարագն սուտ կուայնէ զքարոզնին կու ասէ ու զաղօթնին ի տեղն կու թողու ու զԱ[աստուա]ծ կու խաբէ ու զմարդ»։*

*«Ես առ Ա[ստուա]ծ կարդացի և Տ[է]ր [լուաւ] ինձ, [ընդ ...?]»։*

Գա – *«Երանեալ է այր որ ոչ գնաց ...?» (տե՛ս նաեւ 1ա)։*

Գբ – *«Երկինք պատմեն...?» (տե՛ս նաեւ 1ա)։*

Դբ – *«Ես խաչատուրս սարկաւաք զայս [...?] Ա[ստուա]ծատուր» (տե՛ս նաեւ 1ա)։*

Կնիք՝ 1ա – *Շրջանաձեւ, "BIBLIOTEQU DE LA VILLE DU LYON"։*

**Պահպանակ - Եղիշէ, «Վասն Վարդանայ եւ հայոց պատերազմին»։** *Մասն՝* **Ե-Զ եղանակներից։** *Ժամանակը՝* **Ը-Թ դարեր։** *Պահպանված հատվածները կարդալ՝* **Դբ-Գա (1ա)՝ Ե.** 1-3; 146-148: **Դա-Գբ (1բ)՝** 148-150; 153-159: **Աա-Բբ (2ա)՝ 159-168: Աբ-Բա (2բ)՝ Ե. 169-171; Զ.** 7-11; 42-43: *Թերթեր՝* 4 **(ԱԲ+ԳԴ), մեկական թերթեր լայնքով ծալված։ Կտրատված՝ ԱԲԳԴ-ն՝վերին եզրով, մեկ տող պակաս, սյունակներից մեկը վնասուած, մեկում աջը, մյուսում ձախը։** *Պրականիշեր՝* **չեն պահպանվել։** *Նյութ՝* **մագաղաթ։** *Գրությու՝* **երկսյուն։** *Գիր՝* **ուղղագիծ երկաթագիր։** *Տող՝* **Աաբ10; Բաբ9; Գաբ9; Դա10; Դբ9**[11]։

*Համառոտ ներկայացնենք պատառիկի առ այսօր հայտնի բնագրային կարևոր ընթերցումներն ու Ֆ. Կ. Կոնիբերի հիմնական դիտարկումները՝*

*ա) Պահպանակները հատվածներ են պարունակում Եղիշեի «Վարդանանց պատերազմի» Ե. և Զ. եղանակներից։ Ավելի ստույգ՝ Ե. եղանակի 146-*

[11] **Ձեռագրի եւ ձեռագրում պահվող պահպանակի բնօրինակը չենք տեսել, ուստի եւ մանրամասն ձեռագրագիտական տվյալներ չենք քաղել։ Մեր նկարագրության մեջ պակասում են ձեռագրագիտական տվյալների այնպիսի մանրամասներ, ինչպիսիք են լուսանցքների, գրության դաշտի, տողերի բարձրության, միջտողային հեռավորության եւ այլ ոչ պակաս կարեւոր նկարագրական հարցադրումներ, որոնք օգնում են էլ ավելի ստույգ եւ համակողմանիորեն ներկայացնել թե երբեմնի ձեռագրից մնացած մասունքները՝ պատառիկ-պահպանակները եւ թե վերականգնել այդ ձեռագրի մոտավոր պատկերը։**

*171 և Զ. 7-ի 11-րդ նախադասությունները*[12]*:*

*բ) Աա. թերթի ձախ սյունակը վնասված է, եւ յուրաքանչյուր տողում պահպանված 1-5 գրերով հնարավոր չի լինում պարզել Ե. եղանակի 146-րդ նախադասությանը նախորդող հատվածը: Սակայն, ինչպես հրատարակիչն է պնդում, Մոսկվայի 1892 թվականի հրատարակության իր համեմատած օրինակը թույլ չի տալիս վերականգնել այդ հատվածը: Այսպիսով անվերծանելի է մնացել Աա. թերթի ձախ սյունակն ամբողջությամբ, չնայած պահպանված գրերի մի մասը ընթերցվել է: Հեղինակը վրիպել և չի արձանագրել պահպանակի ընդլայնակի ծալքի հետեւանքով ընկալ ձեռագրի մեջքին կարված մեկ տող, ուստի 20 տողի փոխարեն նշել է 19:*

*գ) Աբ. էջում պակասում են 151-152 նախադասությունները՝* «Եւ ճանզի զարճանային … զվայ եւ զաւաղ բարեկամացն»:

*դ) Բբ. էջում պակասում է Ե. եղանակի 171-րդ նախադասությունից* «բեկաւ անկաւ զաւրութիւն ուժոյն իւրոյ, …» *մինչեւ Զ. եղանակի 7-րդ նախադասության կեսը* «…հրամայեաց սպանանել ի նոցանէ…»: *Այս ամբողջի փոխարեն Ե. եղանակն առանց Զ.-ի վերնագրի, միմյանց է կապվում հետեւյալ հատվածով* «…իսկ (՞) ի գնդին Հայո՞ցսն ինչ յամրոցի, եւ երթեալ զաւրն պարսից գալ ի խաղաղութիւն, որոյ եկեալ…»: *Բբ. էջում չեն վերծանվել երկրորդ սյունակի վերջին երկու տողերը:*

*ե) Որոշ հատվածներ վերծանել է վերապահումով: Դժվարընթեռնելի հատվածներում դրել է հարցականներ, կամ կասկած հայտնել իր ընթերցման վերաբերյալ*[13]*:*

*Վերոշարադրյալ ընթերցումները տարաբնույթ մեկնաբանությունների հիմք դառնալուց բացի երբեւէ բնօրինակի հետ չեն համեմատվել: Անընթեռնելի կամ անվերծանելի համարված հատվածների վերականգնման մի նոր փորձ մեզ հայտնի չէ: Լիոնի Քաղաքային գրադարանի կողմից մեզ տրամադրված*

[12] Ինչպես նախորդ (տե՛ս ծնթ. 1), այնպես էլ ներկա հոդվածում օգտագործել ենք «Մատենագիրք Հայոց» մատենաշարի նախադասությունների համարակալումը: «Մատենագիրք Հայոց», հ. Ա, Ե. Դար, Անթիլիաս-Լիբանան, 2003 թ.: Եղիշեի «Վասն Վարդանայ եւ Հայոց պատերազմին» երկը գտնվում է 521-764 էջերում:

[13] Կոնիբերը Բբ. էջի վերծանության համար նշում է. «…10-րդ տողին համար՝ պէտք է կրկին անգամ համեմատել հատակոտորը, վասն զի փուցէ տառերէն մէկ ճանին սխալ կարդացած ըլլամ»: Նույնպես Բբ. էջի երկրորդ սյունակի 18-19 տողերը: Իսկ որոշ տեղերում էլ, կարծում ենք, սխալ է վերծանում: Ինչպես օրինակ՝ նույն Բբ. էջի վերջին տողում «զի մինչ» բառակապակցությունը կարդացել է «զի մի ոչ»:

թվային բարձրորակ պատկերը[14] բավարարում է պատառիկի տեքստը վերծանելուն, սակայն պատկերներից ձեռագրագիտական-հնագրագիտական տվյալներ քաղելով և դրանցով մայր ձեռագրի չափերի մասին դատողություններ անելով վրիպումներից ապահովագրված չես կարող լինել: Ուստի հեռու ենք մնում պատառիկի մայր օրինակ ձեռագիր մատյանի վերակազմության թեական եզրակացություններից, որը կօգներ որոշ պատկերացում կազմել այդ մատյանի բնույթի մասին (Ճառընտիր է այն, Պատմագիրք, թե Հայսմավուրք):

Վերծանությունների տարընթերցումներում փակագծերի մեջ օգտագործել ենք Ե. Տեր-Մինասյանի կազմած գիտական հրատարակության բնագիրը եւ նրա տարընթերցումները[15]: Այն դեպքում, երբ ԳՀ բնագիրը կամ տարընթերցումը լրացնում է պատառիկի վնասված հատվածները, դրել ենք ուղիղ գրանշաններով: Չենք վերցրել ԳՀ-ում օգտագործված ձեռագիր եւ տպագիր օրինակների տարբերանշանները, քանի որ սույն հոդվածի շրջանակներում դրանք չեն կարող դույզն ինչ պատկերացում տալ ձեռագրերի միջև եղած աղերսների և ընտանիքների մասին: Դյուրության համար տարընթերցումները տրված են նախադասությունների հերթական համարներով: Պատառիկի վերծանությունում առկա լուսանցային գրերը իրենց տեղում դրված են տողից վերընթեր: ԳՀ-ի կետադրության հետ զուգահեռ վերարտադրել ենք նաև երկաթագիր պատառիկին հատուկ կետադրությունը, այն նշելով քառակուսի միջնակետով:

Կոնիբերի վերծանության մեջ տեղ գտած վրիպումներից ամենաէականը պատառիկի առաջին թերթի ձախ սյունակի վերծանությունն է, որը մեծանուն հայագետը Ե. եղանակի 146-րդ նախադասությանը նախորդող հատվածով չի կարողացել վերականգնել: Ուստի պատառիկի 1ա էջի (պահպանակի Դբ-Գա էջերի)[16] ձախ սյունակի վերծանության մեջ տեղ գտած վրիպումներին կանդրադառնանք առավել հանգամանորեն:

Ստորև ներկայացնում ենք պատառիկում վերծանված ամենակարևոր գրչության նմուշների պատկերները:

---

[14] 2007-ի սկզբին Մատենադարանի ֆրանսահայ բարեկամ, հայագետ Արմեն Մութաֆյանի միջոցով եւ աջակցությամբ, ինչպես նաեւ Լիոնի Քաղաքային գրադարանի հին շրջանի ֆոնդի գլխավոր ավանդապահ Պիեռ Գուինարի բարյացակամ օժանդակությամբ ստացանք պահպանակների բարձրորակ պատկերներ, առանց որոնց անհնար կլիներ այս աշխատանքը կատարել, եւ որի համար հայտնում ենք մեր երախտագիտությունը:

[15] «Եղիշեի Վասն Վարդանայ եւ Հայոց պատերազմին», ի լոյս ածեալ բաղդատութեամբ ձեռագրաց, աշխատութեամբ *Եր. Տէր-Մինասեանի*, Երեւան, 1957 թ. (այս հրատարակության համար այսուհետ «գիտական հրատարակություն» կամ «ԳՀ» ձեւով):

[16] Այսուհետ պահպանակները հղում ենք ըստ վերականգնված էջերի՝ Դբ-Գա-ն 1ա, Դա-Գբ-ն 1բ, Աա-Բբ-ն 2ա, Աբ-Բա-ն 2բ: Վերծանություններն ու պատառիկների պահպանակները համապատասխանաբար տե՛ս հավելվածում:



Պատարիկ 1ա (Դբ-Գա) - *Ձախ սյունակ՝ տող 13 - «ընդ Ա[ստուծո]յ», տող 16 - «քն», տող 17 - «ղեցեա», տող 19 - «պա»: Աջ սյունակ՝ տող 12 - «անդ», տող14 - «մա», տող 13 - «այ»:*



Պատարիկ 1բ (Դա-Գբ) - *Ձախ սյունակ՝ տող 3 - «ապ», տող 9 - «որ», տող 10 - «նց», 19 «լխ»*



Պատարիկ 2ա (Աա-Բբ) - *Ձախ սյունակ՝ տող 20 - «ուխտուն»: Աջ սյունակ՝ տող 3 - «ցան», տող 12 - «որք», տող 14 «մի»:*



Պատարիկ 2բ (Աբ-Բա) - *Ձախ սյունակ՝ տող 5 - «ացն» տող 6 - «ոյժ» :*

Ներկայացված գրանշանների խումբը ցույց է տալիս, թե գրիչը ինչպիսի բծախնդրությամբ է հետևել գաղափար օրինակին: Հարազատ մնալով գաղափար օրինակի տողացի ընդօրինակման իր որդեգրած սկզբունքին, ընդօրինակման ընթացքում տողում չտեղավորված գրերը նա կամ կցագրել է, կամ ավելի մանր գրով գրել տողի վերին, ստորին կամ կից լուսանցքում: Հնագրագիտության տեսանկյունից չափազանց ուշագրավ են 1ա էջի ձախ սյունակի 19-րդ տողում «պա» և 1բ էջի ձախ սյունակի 9-րդ տողում «որ» գրերի կցագրումները, որոնք ավելի հատուկ են արձանագրություններին: Չի բացառվում, որ գրիչը պահպանել է նաեւ գաղափար օրինակի արտաքին պատկերը՝ ձեռագրի չափերը, գրատեսակը և այլն:

Վերադառնալով պատառիկի 1ա էջի ձախ սյունակին, նախ պետք է նկատենք, որ «Հանդէսում» հրատարակված վերծանության համապատասխան էջը, ի տարբերություն մյուսների, ունի 19 տող, մինչդեռ մյուսներն ունեն 20 տող: Պահպանակի 11-րդ տողը ընկել է բնկալ ձեռագրի մեջքին կարված ընդլայնակի ծալքի տակ և գրեթե չի երևում: Ուստի հրատարակված վերծանության 10-րդ տողից հետո պետք է նկատի ունենալ ևս մեկ տող, իսկ 11-րդ տողը խմբագրել 12, 12-ը՝ 13 և այդպես շարունակ մինչև 19-ը 20:

Սյունակի նոր վերծանությունը[17] ևս (որի ստույգ լինելու մեջ որևէ կասկած չունենք), թույլ չի տալիս ձախ սյունակի տեքստը վերականգնել Ե. եղանակի 146-րդ նախադասությանը անմիջապես նախորդող հատվածով: Ուստի պետք է դիմենք նման դեպքերում ընդունված տեքստերի վերծանության մեթոդներից մեկին, այն է՝ պահպանված գրանշանների կամ բառակապակցությունների միջոցով նախորդող ամբողջ տեքստում գտնենք այնպիսի մի հատված, որտեղ նկատի ունենալով յուրաքանչյուր տողի գրերի քանակը, հաջորդ տողերում ճշգրտորեն կհամապատասխանեն պահպանված տառակապակցություններն ու բառակապակցությունները: Այսինքն՝ եթե երկրորդ տողում պահպանվել է «...ԳԱՄ Ի» գրերը, ապա նկատի ունենալով, որ տողում կարող են տեղավորվել առավելագույնը 18-20 գիր, ընտրված հատվածի տողատման արդյունքում երրորդ տողի վերջավորությունը պետք է լինի «...ՈՎՆ», իսկ չորրորդինը՝ «...ՌԵԱԼՔ» և այլն: Ինչ խոսք ավելի դյուրին է որոնումներ կատարել պահպանված ամբողջական բառերի կամ բառակապակցությունների միջոցով: Այդպիսիք այս սյունակում երկուսն են՝ 13-րդ տողում «ընդ Աստուծոյ» բառակապակցությունը, իսկ 18-ում «Քրիստոսի» բառը[18]:

---

[17] Ամբողջ սյունակի վերծանությունը տե՛ս Հավելվածում, որտեղ Կոնիբերի աղյուսակաձեւ վերծանություններին զուգընթեր ներկայացված են նոր ընթերցումները:

[18] Կարելի է նաեւ ամբողջական բառ համարել 17-րդ տողի «ղեցեա» տառակապակցությունը, եթե համարենք, որ այն «եկեղեցեաւ» բառն է: Ի դեպ, Կոնիբերն այս գրանշանների

Եղիշէի «Վարդանանց պատերազմ»ում Ե. եղանակի 146-րդ նախադասությունից առաջ «ընդ Աստուծոյ» բառակապակցությունը հանդիպում է՝ Բ. եղանակի 286-րդ, Ե. եղանակի 2-րդ, 3-րդ և 90-րդ նախադասություններում: Այս բառակապակցությամբ և տողում միջինը 20 գիր հաշվարկով տրոհված փնտրելի հատվածին համապատասխանում է Ե. եղանակի 2-րդ նախադասությունը: Ընդ որում, ինչպես վերը նշեցինք, նկատի է առնված, որ «ընդ Աստուծոյ» բառակապակցությունը գտնվում է 13-րդ տողում, իսկ տրոհման ընթացքում 1-12-րդ տողերի վերջավորությունները համապատասխանում են պատառիկում պահպանված տողերի վերջավորություններին:

Ստորև՝ ձախ սյունակում պատառիկի վերծանությունն է, իսկ աջում ԳՀ-ի համապատասխան տողը: Միջին սյունակում նշված է պատառիկի տողում հնարավոր գրերի քանակը.

| | Պատառիկ | | Գիտական հրատարակություն |
|---|---|---|---|
| 1. | [1] [ի սկզբանէ է տեսանել] | 16 | [ի սկզբանէ է տեսանել] |
| 2. | [զբազումս բազում ան]ԳԱՄ Ի | 20 | զբազումս բազում անգամ ի |
| 3. | [բազում տեղիս: [2] որ սիր]ՈՎՆ | 19 | բազում տեղիս: (>Մարդիկ,) որ սիրովն |
| 4. | [Ա[ստուծո]յ իբրեւ զինու վա]ՌԵԱԼՔ▪ | 19 | Աստուծոյ իբրեւ զինու վառեալք |
| 5. | [ոչ ինչ զանգիտելով ի] ՄԱՀՈՒ | 21 | (>էին) ոչ ինչ(>խնայեցին) զանգիտելով (>իբրեւ զանարի՝ գոլով վատասիրտք, կամ) ի մահ |
| 6. | [անէ անձանց,▪ կա]Մ Ի ՅԱ | 15 | անձանց, կամ [ի] յա |
| 7. | [փշտակութիւնէ ըն]ՉԻՑ▪ | 17 | փշտակութիւն ընչից, |
| 8. | [կամ ի խողխողումա]Յ ՍԻՐԵ | 19 | կամ ի խողխողումն սիրե |
| 9. | [լեաց,▪ կամ ի գեր]ՈՒԹԻՒՆ | 17 | լեաց, կամ ի գերութիւն |
| 10. | [է ընտանեաց,▪ առ ո]ՉԻՆՉ | 16 | ընտանեաց, (>ելանել ի հայրենի երկրէն եւ անկանել ի ստրկութիւն յաւտարու-թեան.) առ ոչինչ |
| 11. | [համարեցան զայս ամենայն] | 20 | [համարեցան զայս ամենայն] |
| 12. | [անցս չարչարանաց.▪]ԱՅԼ | 17 | անցս չարչարանացն. Այլ |
| 13. | [միայն միաբան կա]Լ ԸՆԴ Ա[ստուծո]Յ, | 19 | միայն միաբան կալ ընդ Աստուծոյ, |

---

խմբի առաջին գիրը կարդացել է «լ», «լեցեա», կարող էինք ենթադրել, որ այն բառի վերջավորություն է «լեցեալ» ձեւով: Սակայն ոչ «լեցեալ» վերջավորությամբ, ոչ իսկ «լեցեա» մասնիկով որեւէ բառ ողջ «Վարդանանց պատերազմի» բնագրի մեջ չկարողացանք գտնել: Ուստի միակ հավանական տարբերակը մնում է «ղեցեա» ընթերցումը «եկեղեցեաւ» ձեւով:

Այսպիսով, ինչպես նկատելի է տողերի մեծ մասը՝ 2-4-ը, 6-9-ը և 12-13-ը, իրենց վերջավորություններով համընկնում են: Գոյություն ունեցող աննշան տարբերությունները, ինչպես կտեսնենք ստորև, առկա են նաև ԳՀ տարընթերցումներում: Տողերի վերջավորությունների համընկումները անառարկելիորեն հավաստում են, որ պատառիկի 1ա էջի (պահպանակներ՝ Դբ-Գա) ձախ սյունակը «Վարդանանց պատերազմի» Ե. եղանակի սկզբից է: Հինգերորդ և տասներորդ տողերում առկա տարբերությունները մեկնաբանելի են տեքստաբանական, շարահյուսական քննությամբ: Հիմնավորենք մեր դիտարկումները:

Պատառիկի առաջին տողը չի պահպանվել, այն վերականգնել ենք ԳՀ բնագրով: Երկրորդ տողի «գամ ի» գրերի խումբը համապատասխանում է առաջին նախադասության «զբազումս բազում անգամ ի» (20 գրանշանով) հատվածին: Երրորդ տողում մենք հակված ենք զեղչել «մարդիկ» բառը, քանի որ՝ նախ այս բառի հետ տողում գրերի քանակը դառնում է 25, ինչը հնարավոր չէ, և երկրորդ՝ այն բացակայում է նաև ԳՀ բնագրի համար օգտագործված ձեռագրերից մեկում[19]: Վերջապես առաջին և երկրորդ նախադասությունները արհեստականորեն, թերևս փոքր-ինչ շեշտադրմամբ (առաջին նախադասության մեջ այս բառը մեկ անգամ արդեն օգտագործվել է), տարանջատում և երկրորդ նախադասություն են ստեղծում: Այս բառի զեղչումով նախադասությունների իմաստային շարահարությունը չի խաթարվում, այլ միավորվում է «որ» շաղկապով և հիմք տալիս ենթադրելու, որ առաջին և երկրորդ նախադասությունները նախկինում մեկ նախադասություն են եղել, և որ հետագա խմբագրման ընթացքում ներմուծված «մարդիկ» բառի շնորհիվ տրոհվել, երկու՝ մեկը մյուսին հաջորդող նախադասություններ են դարձել:

> (1) «[Մեծ է սէրն Աստուծոյ քան զամենայն մեծութիւն երկրաւոր. եւ այնպէս աներկեւղս առնէ զմարդիկ՝ իբրեւ զանմարմին զաւրս հրեշտակաց, որպէս անդստին ի սկզբանէ է տեսանել զբազումս բազում ան]ԳԱՄ Ի [բազում տեղիս]», (2) (>մարդիկ) [որ սիր]ՈՎՆ [Աստուծոյ զինու վա]ՌԵԱԼՔ▪ (>էին,) [ոչ ինչ] (>խնայեցին) զանգիտելով (>իբրեւ զանարի՝ գոլով վատասիրտք կամ) [ի] ՄԱՀՈՒ…»[20]:

[19] Ուշագրավ է, որ «մարդ» բառի հոգնակի «մարդք» և «մարդիկ» ձևերը զուգահեռաբար կիրառված են պատմության ամբողջ բնագրում:

[20] Առաջին նախադասության վերջում ԳՀ բնագրի համար օգտագործված վեց ձեռագիր և երկու տպագիր օրինակներ առհասարակ չունեն «զբազումս բազում անգամ» բառակապակցությունը, իսկ հինգ այլ ձեռագրեր և երկու ճառընտիր չունեն «զբազումս» բառը:

*Պատառիկի չորրորդ տողն, առանց* «իբրեւ» *բառի համապատասխանում է ԳՀ բնագրին*[21]*:*

*Հինգերորդ տողում պատառիկը պետք է որ չունենար* «էին» *օժանդակ բայը, քանի որ* «վառեալք» *բայից հետո տողավերջում միջնակետ է դրված, իսկ գրերի քանակը տողում առանց այդ էլ արդեն 19 է: Ավելի ուշագրավ է* «...զանգիտելով իբրեւ զանարի՝ գոլով վատասիրտք...» *միջանկյալ նախադասությունը: Այն գտնվում է 4-րդ տողի* «ռեալք» *և 5-ի* «մահու» *վերջավորությունների միջև: Նկատի ունենալով, որ տողում արդեն ունենք հինգ գրանշան՝* «մահու»*, վերականգնվող հատվածի գրանշանների թիվը չի կարող անցնել 15-ը: ԳՀ բնագրի այս հատվածում առկա են 55 գրեր, որոնցով կազմված են* «...էին, ոչ ինչ խնայեցին...» *(16) և* «...զանգիտելով իբրեւ զանարի՝ գոլով վատասիրտք, կամ ի...» *(39) միջանկյալ նախադասությունները: Գրչական վրիպակի կամ տողի անկման մասին խոսք լինել չի կարող: Անհրաժեշտ է պարզապես երկու վերոհիշյալ նախադասություններից մեկը հիմնավորելով տեղադրել տողում: Նախընտրելի համարված միջանկյալ նախադասությունը թե գրերի քանակով, թե իմաստով ու շարահյուսական անխաթարությամբ պետք է ամբողջացնի ոչ միայն տողը, այլև ողջ նախադասության տրամաբանական հորինվածքի մեջ հարազատորեն ընկալվի:*

*Ինչպես վերը նշել էինք՝* «էին» *օժանդակ բայը պատառիկը կարող էր և չունենալ: Իր բնույթով* «...ոչ ինչ խնայեցին...» *բառակապակցություն-միտքը կարծես հարազատ է հաջորդող «զոհողություններ-զրկանքներ» թվարկվող մտքերի ոճին: Մինչդեռ* «...զանգիտելով իբրեւ զանարի՝ գոլով վատասիրտք...» *հատուածը բացատրական նշանակություն ունեցող մի միջանկյալ նախադասություն է, որ լրացնում-բացատրում է* «ոչ ինչ խնայելու» *միտքը, ուստի ավելի նման է հետագա մի հավելման և ամենայն հավանականությամբ պատառիկում այն չէր կարող լինել*[22]*: Ի դեպ ԳՀ բնագրում* «...ոչ ինչ խնայեցին զանգիտելով իբրեւ զանարի՝ գոլով վատասիրտք, կամ...» *հատվածը՝ ըստ երևույթին հենց հավելման շնորհիվ, փոքր ինչ խրթին շարադասություն ունի, որի հետևանքով տուժել է նաև բնագրի աշխարհաբար փոխադրությունը*[23]*: Աշխարհաբար հրատարակության տեքստում այն հաջորդող* «կամ ի

---

[21] Վեց ձեռագիր և երկու տպագիր օրինակներում չկա «իբրեւ» բառը:

[22] Նույն այս տողում պատառիկն ունի «մահու» փոխարեն «մահ», իսկ տարընթերցումներում «խնայեցին» անցյալ կատարյալ բայը չունեն վեց ձեռագիր: Ձեռագրերի մի զգալի մասը չունի «գոլով» բառը:

[23] Տե՛ս **Եղիշե**, Վարդանի եւ հայոց պատերազմի մասին, թարգմանությունը, ներածությունը եւ ծանոթագրությունները *Ե. Տեր- Մինասյանի*, Երեւան, 1971 թ.: Նույնը վերահրատարակված Երեւան, 1989 թ.:

մահ անձանց»[24] հատվածի հետ միասին փոխադրվել է «ամենևին չխնայեցին և անարի վատասիրտների նման չվախեցան մահից» ձևով։ Սակայն «կամ ի մահ անձանց» միջանկյալ նախադասությունը իր «կամ» կապով կարծես թե նախորդի պարզ շարունակությունը չէ։

Եթե, ԳՀ տարընթերցումները նկատի ունենալով, դուրս հանենք «խնայեցին» և «գոլով» բայերը, որոնք որոշ ձեռագիր և տպագիր օրինակներում չկան, ապա կունենանք հետևյալ պատկերը «...ոչ ինչ զանգիտելով իբրեւ զանարի՝ վատասիրտք, կամ...»։ Ուշագրավ է, որ գրեթե նույն ձևով նախադասության այս հատվածը հանդիպում է Բ. եղանակի 242-րդ նախադասությունում՝ «...ոչ ինչ զանգիտելով իբրեւ զանարի վատասիրտս...»։ Պատառիկի 5-րդ տողում առանց դժվարության տեղավորվում է նախադասության «...ոչ ինչ զանգիտելով...» մասը և «մահու» վերջավորության հետ տողում կազմում 21 գրանշան։

Բնագրի նախնական պատկերն էլ ավելի է պարզվում, երբ տողում պահպանված «մահու» գրանշանների խմբով վերծանում ենք «ի մահուանէ» բացառական հոլովով բառը։ Տողի վնասված մասում համապատասխանաբար տեղադրելով «...ոչ ինչ զանգիտելով...» մասը՝ ստանում ենք նախադասության տրամաբանությանը ավելի հարազատ շարադասություն՝ «ոչ ինչ զանգիտելով ի մահուանէ անձանց» (զեղչված է «իւրեանց» դերանունը՝ «անձանց իւրեանց»), որ աշխարհաբար լինում է «չվախենալով իրենց անձերի մահից»։

Բացառելով տողում «էին» օժանդակ բայը, ապա «...խնայեցին...» բայն ու «...իբրեւ զանարի՝ գոլով վատասիրտք, կամ...» բառերը, և վերջապես հոլովված բառերը համաձայնության բերելով[25]՝ վնասված սյունակի 5-րդ տողի «ոչ ինչ» բառից մինչև 10-ի «առ ոչինչ» բառերի միջև կունենանք՝

> «...ոչ ինչ զանգիտելով ի մահուանէ անձանց, կամ ի յափշտակութիւնէ ընչից▪ կամ ի խողխողումաց սիրելեաց, կամ ի գերութիւնէ ընտանեաց, առ ոչինչ...»։

Հաջորդ ընդարձակ հատվածի սրբագրումն հենց 10-րդ տողում է, որտեղ պատառիկը չունի ԳՀ բնագրում առկա «...ելանել ի հայրենի երկրէն եւ անկանել ի ստրկութիւն յաւտարութեան...» հատվածը։ Այս նախադասությունը, իր բնույթով նման լինելով նախորդ սրբագրված նախադասությանը,

---

24 Երկու ձեռագիր և մեկ տպագիր օրինակ չունեն «կամ ի մահ անձանց»

25 ԳՀ բնագիրը փոխարեն պատառիկի եզակի բացառական հոլովով «ի մահուանէ անձանց»ի ունի եզակի տրական հոլովով «ի մահ անձանց»։ Նմանապես 6-րդ տողում պատառիկն ունի «կամ ի յափշտակութիւն ընչից» (պետք է լինի «կամ ի յափշտակութիւնէ ընչից») փոխարեն «կամ յափշտակութիւն ընչից»։ Նույն ձևով նաև 8-րդ տողում՝ պատառիկն ունի «ի խողխողումաց սիրելեաց» փոխարեն «ի խողխողումն սիրելեաց»։

գտնվում է 9-րդ տողի «...ութիւն» և 10-ի «...չինչ» վերջավորության միջև: Բավարար է միայն ասել, որ այս հատվածը իր նախորդ «ի գերութենէ ընտանեաց» նախադասության բացատրությունն է, որ կարծես ձեռագրի լուսանցքից ներս է սպրդել և, ըստ ամենայնի, բնագրի մեջ կատարված հետագա ներմուծում է:

Տասնմեկերորդ տողը պատառիկում չի երևում, քանի որ ընդլայնակի ծալքով կարված է բնկալ ձեռագրին: Սակայն ինչպես այս տողի տեքստը, այնպես էլ հաջորդող երկուսը (12-13-ը) առանց որևէ դժվարության տեղավորվում են տողերի վրա, համընկնում տողում գրերի քանակով, իսկ 13-ը նաև տողերի վերջավորությամբ:

Այսպիսով պատառիկի ձախ սյունակի 1-13 տողերի վերականգնված տեքստն ունի հետևյալ պատկերը՝

> «1. Մեծ է սէրն Աստուծոյ քան զամենայն մեծութիւն երկրաւոր եւ այնպէս աներկեւղս առնէ զմարդիկ՝ իբրեւ զանմարմին զաւրս հրեշտակաց, որպէս անդստին [ի սկզբանէ է տեսանել զբազումս բազում անգամ ի բազում տեղիս, 2. որ սիրովն Ա[ստուծո]յ իբրեւ զինու վառեալք ▪ ոչ ինչ զանգիտելով ի մահուանէ անձանց,▪ կամ ի յափշտակութիւնէ ընչից ▪ կամ ի խողխողումաց սիրելեաց, ▪ կամ ի գերութիւնէ ընտանեաց,▪ առ ոչինչ համարեցան զայս ամենայն անցս չարչարանաց.▪ այլ միայն միաբան կալ ընդ Ա[ստուծո]յ ...]»[26]:

Ամփոփենք կատարված աշխատանքն ու արդյունքները.

Ա. Վերծանության համար որդեգրված մեթոդով, այն է՝ պահպանված գրերի, տողում գրերի մոտավոր քանակի և ԳՀ բնագրում հայտնաբերված համապատասխան հատվածի համադրությամբ ու տողերի վերջավորությունների համընկումով, տեքստն անառարկելիորեն ճիշտ է վերծանված: Բանավեճի առարկա կարող են լինել միայն մեր կողմից առաջարկված քերականական և ուղղագրական միջամտությունները:

Բ. Մեր կարծիքով հետագա խմբագրման արդյունքում ներմուծվել-հավելվել, կամ անճանաչելիորեն վերաշարադրվել են «...մարդիկ...», «...ոչ

[26] Ուղիղ փակագծերի մեջ են առնված պատառիկում առկա տեքստն ու վերծանությունը: Ընդգծված են նաև պատառիկի վնասված հատվածների տեսանելի գրերն ու մեր քերականական խմբագրումները: Նույնը տե՛ս նաեւ հավելվածում զետեղված պատառիկների վերծանության տեքստերում եւ պատկերներում: Երկրորդ նախադասությունը հեռավոր նմանություն և աղերսներ ունի Գ. եղանակի 52-րդ նախադասության հետ՝ «Մարդ, որ ոչ ի կապանաց զանգիտեն, եւ ոչ ի տանջանաց երկնչին, եւ ոչ ի ստացուածոց պատկառին, եւ որ յետին չար է քան զամենայն չարիս՝ զմահ քան զկեանս ընտրեն, ո՞վ է, որ կարէ նոցա դիմակաց լինել»:

ինչ խնայեցին զանգիտելով իբրեւ զանարի՝ զոլով վատասիրտք, կամ…» *և* «…ելանել ի հայրենի երկրէն եւ անկանել ի ստրկութիւն յաւտարութեան…» *հատվածները: Սրանք չեն կարող ձեռագրի ընդօրինակման ընթացքում գրչի կողմից վրիպում համարվել: Պատառիկի բնագիրը չի կարող նաև կրճատված համարվել, քանի որ վերոհիշյալ հատվածներն իրենց բնույթով շատ ավելի հավելագրման նման են:*

*Գ. Ապացուցված համարելով, որ ձախ սյունակը սկսվում է Եղիշէի «Վարդանանց պատերազմի» Ե. եղանակի առաջին և երկրորդ նախադասություններով, նկատի ունենալով, որ մնացած ութ տողերում կարող է տեղավորվել առավելագույնը երկու նախադասություն, իսկ աջ սյունակը սկսվում է 146-րդ նախադասությամբ՝ միանգամայն պարզ է դառնում, որ պատառիկն առհասարակ չունի Ե. եղանակի շուրջ 141 նախադասություն:*

*Ինչպես տեսնում ենք առաջին երկու նախադասությունները միասին պատառիկում մի ամփոփ միտք են արտահայտում, և կարող էին լինել մեկ նախադասություն: Ավելի ջանք է պահանջում 14-20 տողերի, ինչպես նաև աջ սյունակի առաջին տողի վերծանումը: Մինչ հաջորդող ութ տողերի (յոթը ձախ, մեկը աջ սյունակում) վերծանությանն անդրադառնալը, վերադառնանք երկրորդ նախադասության վերջին: Չէ՞ որ* «ընդ Աստուծոյ» *բառերով այն չի ավարտվում, այլ շարունակվելով որևէ կերպ չի համընկնում 14-20 տողերի վերջավորություններին, ըստ այդմ և պատառիկում այն չի կարող լինել: Ահա պատառիկում պակասող երկրորդ նախադասության հատվածը.*

«… զի ի նմանէ միայն մի՛ զերի ելցեն. եւ ամենայն երեւելի մեծութեանս զնա բաւական համարեցան՝ ընտրեալ ի միտս իւրեանց»:

*Նույն հատվածի ոճով գրված 3-րդ նախադասությունը ևս թույլ չի տալիս վերականգնել 14-20 տողերը:*

3 «Եւ զուրացութիւնն մեռելութիւն վարկանէին, եւ զմահ վասն Աստուծոյ՝ անանց կենդանութիւն, եւ ծառայել յերկրի՝ ազատութիւն կենաց իւրեանց, եւ ընկենուլ զանձինս յաւտարութիւն՝ ընդ Աստուծոյ գիտից»:

*Ինչ վերաբերում է 4-րդ նախադասությանը, ապա այն իր բնույթով շարադրանքի մեջ մի միջարկություն է:*

4 «Որպէս յայսմ ժամանակի տեսաք աչաւք մերովք, զի զնոյն

նահատակութիւն նահատակեցաւ եւ աշխարհս Հայոց»[27]:

*Ուստի խնդրելի հատվածը պետք է փորձել վերականգնել 5-146 նախադասությունների միջակայքում: Փորձենք այն վերականգնել վերջից՝ 146-րդ նախադասության միջոցով: Այն՝ պատառիկ ԳՀ բնագիր համադրությամբ հետևյալ պատկերն ունի.*

| Պատառիկ | ԳՀ բնագիր |
|---|---|
| 146 [...] | 146 *Իսկ կորովին Վարդան իւրովք քաջ նիզակակցաւքն* |
| 1. [...] | 1. [...] |
| 2. ՐԱՋՄԻՆ ՈՉ ՍԱԿԱՒ ՆԱԽ | 2. ոչ սակաւ նախ |
| 3. ՃԻՐՍ· Ի ՏԵՂԻՈՋՆ ԳՈՐԾԷՐ Ի | 3. ճիրս ի տեղւոջն գործեաց, |
| 4. ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ, ՅՈՐ | 4. յոր |
| 5. ՈՒՄ ԵՒ ԻՆՔՆ ԱՐԺԱՆԻ ԵՂԵՒ | 5. ում տեղւոջ եւ ինքն իսկ արժանի եղեւ |
| 6. ԱՌՆՈՒԼ ԶԿԱՏԱՐԵԱԼ ՆԱՀԱ | 6. առնուլ զկատարեալ նահա |
| 7. ՏԱԿՈՒԹԻՒՆՆ: | 7. տակութիւնն: |

*Այս համադրությունից պարզ երևում է, որ 146-րդ նախադասությունը խմբագրված է, և նախորդող* «Իսկ կորովին Վարդան իւրովք քաջ նիզակակցաւքն» *հատվածը չի կարող նույնությամբ պատառիկում լինել: Առկա տարբերություններն են՝*

– «Իսկ կորովին Վարդան իւրովք քաջ նիզակակցաւքն...» - *Պատառիկում առաջին տողը, որտեղ կարող էր լինել այս նախադասության մասը չի երևում*[28]*:*
– *Պատառիկի երկրորդ տողի սկզբում առկա է* «րազմին» *գրանշանների խումբը, որն ԳՀ բնագիրը չունի: Ըստ ամենայնի՝ նախորդ տողի վերջում պետք է լինի* «պատե» *գրերի խումբը, հաջորդ տողի սկզբի գրերի խմբի հետ կազմելու համար* «պատերազմին» *բառը: Սակայն, ինչպես տեսնում ենք, 146-րդ նախադասությունը ԳՀ բնագրում առհասարակ չունի* «պատերազմին» *բառը:*[29]
– *Հաջորդող* «ոչ սակաւ նախճիրս» *հատվածը նույնությամբ կրկնվում է թե պատառիկում, թե ԳՀ բնագրում:*
– *Վերջին* «ի տեղւոջն գործեաց» *բառակապակցությունը ԳՀ բնագրում*

[27] Այս նախադասությունը ոչ այն է Եղիշէինն է, ոչ այն է խմբագրի կողմից իր ժամանակների իրադարձություններն ակնարկող դիտարկում-մեջբերում:
[28] ԳՀ բնագրի տարընթերցումներում կան երկու մեկական ձեռագրերով վկայված ոչ էական տարբերություններ՝ «իւր» կամ «իւրով» փոխարեն «իւրովք»:
[29] Պատառիկի բնագրում այս բառը կա երկու տեղում: Այլ ձեռագրերով այսպիսի տարբերություն նկատված չէ:

ունի մի շարք տարընթերցումներ[30]:

– Միայն պատառիկն ունի «ի մեծ պատերազմին» բառակապակցությունը:
– Պատառիկն ունի «յորում եւ ինքն» փոխարեն «յորում տեղւոջ եւ ինքն իսկ»[31]:
– Մնացած «արժանի եղեւ առնուլ զկատարեալ նահատակութիւնն» հատվածը նույնն է թե պատառիկում և թե ԳՀ բնագրում[32]:

Նախադասության այսօրինակ մանրամասն համադրումը ցույց է տալիս, որ մենք գործ ունենք նույն հատվածում, նույն միտքը արտահայտող սակայն էական նրբերանգներով մեկը մյուսից տարբերվող երկու տարբեր բնագրերի հետ: Պատառիկի ձախ սյունակում վնասված յոթ տողերի և աջ սյունակի առաջին տողի տեքստը վերականգնելու համար մենք ունենք երկու հնարավոր փնտրտուքի «բանալի» բառեր: Դրանք են «Քրիստոսի» բառը ձախ սյունակի 18-րդ տողում և «րազմի» անհայտ բառի (ենթադրաբար՝ «պատերազմին») վերջավորությունը աջ սյունակի երկրորդ տողում: 5-146 նախադասությունների միջակայքում «Քրիստոսի» բառը գործածված է վեց անգամ, իսկ «րազմին» վերջավորությամբ բառ միայն «պատերազմին» բառն է և գործածված է հինգ անգամ: Իր հերթին «պատերազմ» բառը այլ հոլովմամբ և այլ վերջավորություններով գործածված է ևս վեց անգամ:

«Քրիստոսի» բառով հնարավոր չեղավ որևէ փոքր ի շատէ համընկնող հատված հայտնաբերել: Իսկ «պատերազմ» բառն այդ հնարավորությունը ընձեռնեց: Այն զանազան հոլովումներով հանդիպում է՝ 14-րդ նախադասությունում «պատերազմունս», 22-ում «պատերազմիս», 47-ում «պատերազմական», 106-ում «զպատերազմն», 107-ում «պատերազմի» և «պատերազմ», 121-ում «պատերազմէն» ձևերով: Իսկ «պատերազմին» ձևով ինչպես արդեն նշել էինք հանդիպում է հինգ տեղում՝ 8-րդ, 10-րդ, 12-րդ, 50-րդ և 73-րդ նախադասություններում: Մեր պրպտումների ընթացքը ավելորդաբար չշարադրելու համար, միանգամից ներկայացնենք 5-10-րդ տողերի միջակայքը, որով հնարավոր է վերականգնել պատառիկի պակասող հատվածը:

Այս դեպքում բավարար չէ այն սկզբունքը, որ մինչ հիմա գործածում էինք: Խմբագրված տեքստը եթե պարզապես ներմուծված կամ կրճատված

[30] Մասնավորապես տասը ձեռագիր, երկու տպագիր և չորս ճառընտիր օրինակներ ունեն պատառիկի հետ նույն՝ «գործէր» ձևը, իսկ յոթ ձեռագիր և մեկ տպագիր օրինակ ունեն ԳՀ բնագրի հետ նույն «գործեաց» ձևը:

[31] Ինը ձեռագիր, մեկ տպագիր եւ մեկ ճառընտիր չունեն վերջին «իսկ» բառը:

[32] ԳՀ բնագրի տարընթերցումներում միայն մեկ ձեռագիր ունի «նահատակութեանն պսակ» ձեւը:

հատվածներ ունի, ապա շատ ավելի դյուրին է տողում եղած գրերի քանակով և պահպանված գրերի համընկումով վերականգնել տեքստը: Իսկ եթե տեքստը անճանաչելիորեն աղճատված է կամ վերաշարադրված, ապա մնում է պատառիկում պահպանված ընդհանուր բովանդակությանը իր շարադրանքով առավելապես մոտ հատվածում փնտրել-գտնել այնպիսի բառեր, որոնք կարող են ունենալ պատառիկում պահպանված տողերի վերջավորություն-գրանշանները: Ազատ խմբագրված տեքստում կարող են լինել նաև բառերի հետևառաջումներ: «Անհայտ խմբագիրը» կարող էր դուրս թողնել որևէ հատված և տեղը նույն միտքը վերաշարադրեր այլ կերպ, կամ ընդարձակելով շարադրած միտքը հավելեր և անճանաչելիորեն ճոխացներ այն: Սակայն նախնական տեքստի ինչ-ինչ բառեր ու արտահայտություններ նոր շարադրանքում՝ իր իսկ խմբագրման մեջ, անպայմանորեն պետք է որ օգտագործեր:

Վերծանության համար ընդունելով նախնական այսօրինակ չափանիշներ՝ փորձենք մեր ունեցած գրանշանների խմբերով վերականգնել վնասված տողերը: Ըստ այդմ 5-10-րդ տողերի միջակայքում մենք փնտրելու ենք «...**ան■ ոչ...**», «...**վ անե...**», «...**ելովf**ն...», «...**ղեցեա...**», «...**Քրիստոսի■ յո...**», «...**չափ պա...**», «...**ու...**» և «...**րազմին...**» վերջավորություններով կամ մասեր ունեցող բառեր, որոնց համադրմամբ ոչ միայն տողերի վերջավորությունները պետք է համընկնեն, այլև 3-րդ նախադասությունը 146-ին պետք է կապեն տրամաբանական շարահարությամբ: Իսկ վերջավորությունների կամ բառերի մասերի կուտակումները շարադրանքի մեջ մեկը մյուսին կամ պետք է հաջորդեն, կամ իրար շատ մոտ լինեն:

Վերջից՝ աջ սյունակի առաջին տողից գալով նախ տեղադրենք «**պատե**» մասնիկը որպեսզի երկրորդ տողի «**րազմին**» մասնիկի հետ կազմի «**պատերազմին**» բառը: Նկատենք, որ տողի առավելագույնը 20 գրանշաններից չորսն արդեն հայտնաբերված են: Ապա հաշվի առնելով, որ ձախ սյունակի վերջին 20-րդ տողը վերջանում է «**ու**» գրով՝ փորձենք տեղադրել 10-րդ նախադասության «**պատերազմին**» բառից հետընթացով՝ «համագու-**նդf հասանէին ի գործ պատե**-րազմին»: Ճիշտ 20 գրանշանով այս հատվածը համընկնում է աջ սյունակի առաջին տողին, իսկ ձախ սյունակի վերջին տողից ունենում ենք «**համագու**» գրանշանների խումբը, ընդամենը յոթ գրանշան: Մնում է գտնել շուրջ 13 գրանշան այս տողի համար: Ձախ սյունակի 19-րդ տողը վերջանում է «**...չափ պա...**» գրանշանների խմբով: Բառի սկզբում «**պա**» մասնիկն ունեցող ամենահարմար բառը 8-րդ նախադասության «**պատրաստութեամբ**» բառն է, որ իր տեղը դրվելով կազմում է 20-րդ տողը՝ «պա – **տրաստութեամբ համագու**», նորից ճիշտ 20 գրանշանով: Նախընթացի տրամաբանությամբ 18-րդ տողում ունենք «...**Ք[րիստոս]ի■ յո...**»: Վերջին «**յո**» մասնիկը բառա-

*սկզբում ունեցող որևէ բառ չունի, թեև ամենայն հավանականությամբ այն* «յո-րում» *հարաբերական դերանունն է: Հատկապես որ այն կրկնված է նաև նա-խադասության շարունակության մեջ՝ աջ սյունակի չորրորդ տողում և շարա-հյուսական նույն տրամաբանության մեջ է գտնվում: Ընդ որում* «պատրաս-տութեամբ» *բառին նախորդում է* «ամենայն» *բառը, որի տեղը հանգիստ կա-րող էր լինել* «անչափ»*: Ուստի կիսով չափ վերականգնված 19-րդ տողը կու-նենա հետևյալ պատկերը՝* «*Ք[րիստոս]ի* ▪ *յո* - րում … անչափ պա…»*:* «Քրիստոսի» *բառի հետ միասին այս հատվածի ընդհանուր տրամաբանու-թյունը հուշում է, որ պակասող բառը 6-րդ նախադասությունում երկու անգամ օգտագործված* «fաջալերեալ» *բայն է*[33]*, որի հետ միասին տողում գրերի քանակ հասնում է ճիշտ 20-ի: Ի մի բերենք ձախ սյունակի այս հատվածի վե-րականգնված պատկերը: Ահա այն.*

18. […] Ք[ՐԻՍՏՈՍ]Ի.ՅՈ

19. [րում fաջալերեալ, ան]ՉԱՓ ՊԱ

20. [տրաստութեամբ հսմագ]ՈԻ

2. [նդf հասանելով ի գործ պատե]

3. ՐԱԶՄԻՆ ՈՉ ՍԱԿԱԻ ՆԱԽ…

*Մնում է վերականգնել 14-18 տողերը, որտեղ 18-րդ տողում ունենք չորս գիր՝* «…Քի▪ յո…»[34]*: Նախորդող 17-րդ տողը վերջանում է* «…ղեցեա…» *գրա-նշաններով, որտեղ ղ-ն երևում է ե-ի տակ իր ելուստով: Այս մասնիկով միայն* «եկեղեցի» *բառն է որ զանազան հոլովումներով օգտագործված է բնագրում: Որևէ այլ բառ* «…ղեցեա…» *մասնիկով հայտնաբերել հնարավոր չեղավ: Են-թադրում ենք, որ պատառիկում այն օգտագործված պետք է լինի գործիական հոլովով՝* «*եկեղեցեաւ*»*:*

*16-րդ տողի* «ելովfն» *վերջավորությունը ինքնին կարող է լինել նաև բառի վերջավորություն և ոչ թե պարզապես մաս: Այսպիսի վերջավորությամբ ամենահարմար բառը 6-րդ նախադասությունում գործածված* «միա-բանեալf» *բառն է, միայն թե* «միաբանելովfն» *ձևով:* «Միաբանելովfն» *բա-ռի և 17-րդ տողավերջի* «եկեղեցեաւ» *բառերի միջև տեղադրում ենք 7-րդ նա-խադասության* «յԱրտաշատ ընդ» *բառերը, բացատրությունը թողնելով փոքր ինչ վերջում: 15-րդ նախադասության* «…վ անե…» *գրանշանների խումբը առավելագույնս կարող է համապատասխանել 7-րդ նախադասության* «ժողո-վել» *բառին, միայն թե* «ժողով անել» *ձևով: Իսկ 14-ի* «…ան▪ ոչ…» *գրա-նշանների խումբը համընկնում է 5-րդ նախադասության* «իբրեւ ետես մեծն Վարդան» *և նույնի* «ոչ ինչ թերահաւատութեամբ զանգիտեաց» *բառերին:*

33 6-րդ նախադասությունում այն հետևյալ տեսքն ունի «…fաջալերեցաւ յանձն իւր եւ fա-ջալերեաց…»:

34 «Քրիստոսի» բառը պատվո նշանով է:

*Միայն թե անհրաժեշտ է պատառիկից բացառել* «մեծն» *ածականը և* «թերաճավատութեամբ» *մակբայը։ Վերականգնման համար առանձնացված այս բոլոր բառերը հերթականությամբ տեղադրելով ստանում ենք հետևյալ պատկերը.*

14. [Իբրեւ եւտես Վարդ]Ա.Ն.ՈՉ
15. [ինչ զանգիտեաց, այլ ժողո]Վ ԱՆԵ
16. [լով ամենայն միաբան]ԵԼՈՎՔՆ
17. [յԱրտաշատ ընդ եկեղ]ԵՑԵԱ
18. [ւ սրբոյ ուխտին Յի] ՔԻ▪ ՅՈ
19. [րում ճաչալերեալ ան]ՉԱՓ ՊԱ
20. [տրաստութեամբ համազ]ՈՒ

2. [նդք հասանելով ի գործ պատե]
3. ՐԱԶՄԻՆ ՈՉ ՍԱԿԱՒ ՆԱԽ
4. ՃԻՐՍ Ի ՏԵՂԻՈՋՆ ԳՈՐԾԷՐ Ի
5. ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ, ՅՈՐ
6. ՈՒՄ ԵՒ ԻՆՔՆ ԱՐԺԱՆԻ ԵՂԵՒ
7. ԱՌՆՈՒԼ ԶԿԱՏԱՐԵԱԼ ՆԱՀԱ
8. ՏԱԿՈՒԹԻՒՆՆ:

*Փորձենք հիմնավորել մեր կատարած ընթերցումները մի այլ մեթոդով։ Նախ կատարված աշխատանքի ամբողջական պատկերն ունենալու համար միահար շարադրանքով ներկայացնենք պատառիկի վերծանված տեքստը։ Այնուհետև համադրելով ԳՀ բնագրի հետազոտվող հատվածի հետ փորձենք երկրորդական նախադասությունների տարանջատմամբ վեր հանել հիմնական մտքերը, և տեսնենք արդյոք վերծանված տեքստի շարադասությունը չի՞ տուժում և հաղորդում է ԳՀ բնագրի հիմնական ասելիքը։*

« 1. *Մեծ է սէրն Աստուծոյ քան զամենայն մեծութիւն երկրաւոր եւ այնպէս աներկեւղս առնէ զմարդիկ՝ իբրեւ զանմարմին զաւրս հրեշտակաց, որպէս անդստին [ի սկզբանէ է տեսանել զբազումս բազում* անգամ ի *բազում տեղիս,* 2. *որ սիրո*վն *Ա[ստուծո]յ իբրեւ զինու վառեալ*ք ▪ ոչ ինչ զանգիտելով *ի* մահուանէ *անձանց,*▪ *կամ* ի յափշտակութիւնէ *ընչ*ից ▪ *կամ ի խողխողումա*ց սիրելեաց, ▪ *կամ ի գեր*ութիւնէ *ընտանեաց,*▪ *առ ոչ*ինչ *համարեցան զայս ամենայն անցս չարչարանաց.*▪ այղ *միայն միաբան կալ* ընդ Ա[ստուծո]յ:
5-10. Իբրեւ եւտես Վարդան. ոչ *ինչ զանգիտեաց, այլ ժողով* անելով *ամենայն միաբանելով*քն *յԱրտաշատ ընդ եկեղ*եցեաւ *սրբոյ ուխտին Յ[իսուս]ի* Ք[րիստոս]ի▪ յորում ճաչալերեալ անչափ պատրաստութեամբ համազու*նդք հասանելով ի գործ պատե*(146.)րազմին ոչ սակաւ նախճիրս ի տեղուջն գործէր ի մեծ պատերազմին, յորում եւ ինքն արժանի եղեւ առնուլ զկատարեալ նահատակութիւնն»]:

*Ստորև ԳՀ բնագրի քննվող հատվածում ընդգծել և ապա առանձնացրել ենք այն բառերն ու բառակապակցությունները, որոնք համարել ենք տվյալ նախադասություններում վերծանության համար օգտակար։ Ծ-րդ նախադասությունը ճակատամարտին մասնակցած զորավարների անվանացանկն է, որ*

*պատառիկի պակասող հատվածի լրացման համար նշանակություն չունի, ուստի և նկատի չենք առել:*

5 «*Քանզի* իբրեւ ետես *մեծն* Վարդան *զերկպառակութիւն աշխարհին իւրոյ,* ոչ ինչ *թերահաւատութեամբ* զանգիտեաց», - իբրեւ ետես Վարդան ոչ ինչ զանգիտեաց:

6 «*Թէպէտ և ստուգեալ գիտաց զբազմաց այլոց ևս զերկմտութիւն, որ դեռ ևս ընդ նմա միաբանեալք էին,* ճաչալերեցաւ *յանձն իւր և քաջալերեաց զզաւրսն իւր. քանզի ինքն իսկ բռնացեալ ունէր զթագաւորանիստ տեղիսն միաբանութեամբ նախարարացն, որ ոչ քակեցան* ի սուրբ ուխտէն», - ճաչալերեցաւ ի սուրբ ուխտէն:

7 «*Հրաման տուեալ ամենայն զաւրացն* ժողովել յԱրտաշատ *քաղաք, փոխանակ յետս կացելոցն որ ելին զհետ իշխանին Սիւնեաց, զեղբարս կամ զորդիս կամ զեղբարցն որդիս ի տեղի նոցա մատուցանէր, և զիւրաքանչիւր զաւրս տայր նոցա, զի դեռ ևս ինքն ունէր զամենայն աշխարհն»,* - ժողովել յԱրտաշատ:

8 «*Եւ փութով ամենեքեան ի տեղի պատերազմին եկեալ հասանէին իւրաքանչիւր զաւրաւք եւ* ամենայն պատրաստութեամբ, *նոքա եւ որ բունքն հաստատուն կացեալ էին ի տեղւոջն»,* - ամենայն պատրաստութեամբ:

10 «*Սոքա ամենեքեան* համագունդ հասանէին ի գործ պատերազմին *ի դաշտն Արտազու եւ լինէր հանդէս համարուն վաթսուն եւ վեց հազար այր ընդ հեծեալ եւ ընդ հետեւակ»,* - համագունդ հասանէին ի գործ պատերազմին:

*Ուշագրավ է, որ ընտրված գլխավոր նախադասությունները մեկը մյուսին կցելով, կապելով միմյանց «այլ» և «եւ» շաղկապներով՝ստանում ենք համահունչ, կանոնավոր մեկ նախադասության ուրվագիծ՝* «...իբրեւ ետես Վարդան ոչ ինչ զանգիտեաց – [այլ] ճաչալերեցաւ ի սուրբ ուխտէն – [եւ] ժողովե[ա]լ յԱրտաշատ - ամենայն պատրաստութեամբ համագունդ - հասանէին ի գործ պատերազմին»:

*Պատառիկում Եղիշէի պատմության բնագիրը համառոտվա՞ծ է, թե՞ բուն բնագիրն է, ԳՀ բնագի՞րն է հետագա խմբագրման-հավելման արդյունք, թե պատառիկը համռոտման: Այս հարցերի պատասխանը տեքստաբանական մանրակրկիտ ուսումնասիրությունը կարող է միայն տալ: Առայժմ հեռու մնալով նման վարկածի քննարկումից, փորձենք հնարավոր բոլոր փաստարկներով հիմնավորել պատառիկի վերծանությունը:*

*Բովանդակային իմաստով ինչպես տեսնում ենք վերծանված հատվածը սահուն շարադասությամբ կապվում է թե նախորդող նախադասություններին և թե հաջորդող: Ինչը այնքան էլ սահուն չէ ԳՀ բնագրում: Ինչպես նկատել էինք, 4-րդ նախադասությունը առհասարակ մի միջանկյալ նախադասություն*

է, որ անցյալում և «հեղինակին» կամ «խմբագրին» ժամանակակից իրադարձությունների զոհերին «նահատակություն» բնորոշումն է տալիս: 5-րդ նախադասությանը նախորդող նախադասություններում ոչ մի խոսք չկա «իր աշխարհի» երկպառակության կամ թերահավատության արժանի որևէ բանի մասին: Այն ավելի շուտ կարող էր կապվել Դ. եղանակի բովանդակության հետ: Հակառակ դեպքում պետք է ենթադրել, որ, ի հակադրություն «զբաւզումս բազում անգամ ի բազում տեղիս» զոհողության պատրաստ նախնիների, հեղինակի ժամանակակիցները նույն տոգորումով պատրաստ չէին պատերազմի: Իսկ առհա նախադասության ընդգծված գլխավոր անդամներով այն լիովի կապվում է առաջին երկու նախադասությունների հետ: Այսինքն՝ տեսնելով հերոսական զոհողությունների ու զրկանքների պատրաստ զինակիցներին, որ նկարագրված են առաջին երկու նախադասություններում, նա՝ Վարդանը, ոչնչից չի վախենում. - «Իբրեւ ետես Վարդան ոչ ինչ զանգիտեաց»: Ասել է, թե առաջին երկու նախադասություններում բերված զոհողության օրինակները վերաբերում են ոչ թե հեռու անցյալին, այլ հեղինակին ժամանակակից իրադարձություններին, որոնց մասին նա պատմել է կամ պատրաստվում է պատմել առաջիկա շարադրանքում:

Բնագրի այսօրինակ քննությունը ցույց է տալիս թե որքան տարբեր է պատառիկի և ԳՀ բնագրի նույն հատվածի բովանդակության տրամաբանությունը: Այստեղ ոչ միայն կարևոր են առկա բնագրային տարընթերցումները, այլև իմաստային, պատմության նկարագրության և մեկնաբանման ոճերը, դեպքերի, իրադարձությունների ներկայացման տրամաբնությունն ու դրանց հաջորդականությունը: Այսօրինակ ակնբախ տարբերությունները թույլ չեն տալիս մեզ պատառիկի բնագիրը համարել պարզ համառոտում: Ավելի շուտ հուշում են, թե մենք գործ ունենք «Վարդանանց պատերազմի» մի նոր, մինչ այժմ հայտնի բնագրից տարբեր բնագրի հետ:

Կարելի է թերևս շարունակել և նոր փաստարկներ բերել հօգուտ մեր վերծանության, սակայն, բերված փաստարկները բավարար համարելով, պարզապես արձանագրենք, որ քանի դեռ նոր, մի այլ ավելի համոզիչ վերծանության տարբերակ չի առաջարկվել, սույն վերծանությամբ պետք է համարենք, որ 1ա պատառիկի ձախ սյունակը սկսվում է «Վարդանանց պատերազմի» Ե. եղանակի 1-2 նախադասությունների մասերով, այնուհետև շարունակվում 5-10 նախադասությունների միջոցով վերականգնված մի նոր հատվածով և ապա միանում է 146-րդ նախադասությանը ԳՀ բնագրից տարբեր մի բոլորովին այլ նախադասությամբ:

Պատառիկի 1ա էջի աջ սյունակն այնուհետև դյուրընթեռնելի է: ԳՀ բնագրի հետ 146-րդ նախադասության տարբերություններն իր տեղում նշել ենք,

*ուստի հերթականությամբ, ըստ նախադասությունների նշենք պատառիկի բնագրում առկա էական տարբերությունները*[35]*:*

147-*ում պատառիկն ունի* «մայրաւորաց երեւելին», *ԳՀ բնագիրը չունի* «երեւելին»:

148-*ում* «զբեկորս նիզակացն» ] «զբեկումն նիզակացն»:

149-*ում* «վանեալք» ] «վատնեալք»; «դարձեալ զմիմեանս» ] «դարձեալ միւսանգամ զմիմեանս»:

150-*ում պատառիկն ունի* «մինչեւ ի մուտս արեգանն» ] «եւ մինչեւ ի մուտս արեգականն անդադար լինէր գործ դառնութեանն»: *Պատառիկում այս նախադասությունը նախորդի շարունակությունն է՝ «դարձեալ զմիմեանս սատակէին մինչեւ ի մուտս արեգանն»:*

151-152 – *Պատառիկը չունի այս նախադասությունները:*

153- *Պատառիկն ունի միայն նախադասության կեսը՝* «քանզի ոչ էր կողմն որ յաղթեաց, եւ կողմն՝ որ պարտեցաւ»: *Չունի* «այլ քաջք ընդ քաջս ելեալ երկոքին կողմանքն ի պարտութիւն մատնեցան»:

154-155-*ը նույնն են երկուսում էլ:*

156- *Պատառիկում չկա* «որ անդէն ի տեղւոջն կատարեցան» *մասը:*

157-167 *նախադասությունները մանր տարբերություններով նույնն են:*

168-*ում Պատառիկն ունի, իսկ ԳՀ բնագիրը ոչ՝* «որք մեծաւ ճգնութեամբ վասն սուրբ հաւատոց ի վերայ սուրբ եկեղեցւոյ պատերազմեալք կատարեցան ի Ք[րիստո]ս» *հատվածը:*

169-*ի սկիզբը՝ որ պատառիկի առաջին տողում պետք է լիներ, չի պահպանվել: ԳՀ բնագրի* «Իսկ ի կողմանէ ուրացելոցն» *փոխարեն վերականգնել ենք* «Իսկ ի կողմանէ հեթանոսաց» *ձևով: Նկատի ենք առել ԳՀ բնագրի տարընթերցումներից մեկը՝* «ուրացելոցն եւ հեթանոսաց»*: Քանի որ պատառիկի տողում կարող էր տեղավորվել այս բառերից միայն մեկը, նախընտրեցինք* «հեթանոսաց» *բառը, նկատի ունենալով, որ պարսից բանակի զոհված զինվորները չէին կարող «ուրացողներ» կոչվել, այլ միայն «հեթանոսներ»: Հակառակ դեպքում ճակատամարտը պետք է տեղի ունեցած լիներ հայերի և հայերի միջև:*

170-*ում էական տարբերություն չկա:*

171 - *Պատառիկն ունի* «զի ետես եւթնապատիկ զհարուածս» *փոխարեն ԳՀ-ի* «Մանաւանդ իբրեւ ետես զանհնարին հարուածսն»: *Այնուհետև պատառիկը չունի* «...բեկաւ անկաւ զաւրութիւն ուժոյն իւրոյ...» *մինչև*

---

35 Ոչ էական տարբերությունները տե՛ս հավելվածում վերծանությունների տարընթերցումներում:

*Զ. եղանակի 7-րդ նախադասության* «...իբրեւ ոչ կամաւ իջեալ կացին առաջի,...»: *Փոխարենը այս ամբողջ հատվածի Ե. եղանակը, առանց Զ.-ի վերնագրի, միմյանց է կապվում հետևյալ հատվածով* «...իսկ եին ի գնդին Հայոց մասն ինչ յամրոցի, եւ երթեալ զաւրն պարսից զալ ի խաղաղութիւն, որոց եկեալ...» *այնուհետև ինչպես ԳՀ բնագրում*:

*Զ. եղանակի 8-10-ը նախադասությունները պատառիկում և ԳՀ բնագրում քերականական մանր տարբերություններով նույնն են:*

*Պատառիկի 2բ էջի աջ սյունակը ավարտվում է 10-րդ նախադասությանը հաջորդող երեք տողերով, որտեղ պահպանվել են 10-րդ նախադասության վերջին բառի մասը՝ 18-րդ տողում «երեքտա-*սանfն*»*, *19-րդ տողում* «յանխն» *և 20-ում* «գտեալ» *գրերը: 11-րդ նախադասությամբ այս տողերը հնարավոր չեղավ վերականգնել: Դիմելով արդեն փորձված մեթոդին 11-րդ նախադասությունից հետո մինչև վերջ ընկած ողջ միջակայքում* «յանխն» *մասնիկ և* «գտեալ» *բառն ունեցող հատվածներ գտանք 42-43 նախադասություններում* «գտեալ»*ը՝* «գտին» *ձևով, իսկ* «յանխն»*ը՝* «յանխնայ» *ձևով: Այս նախադասությունների միջոցով էլ փորձել ենք վերականգնել 18-20-րդ տողերը: ԳՀ բնագրում այս նախադասություններն ունեն հետևյալ պատկերը՝*

42 «Եւ գտին անդ գունդ բազում ի զաւրացն արfունի, որ *գերի առնուլ կամէին զամրականս աշխարհին. դարձեալ եւ կարծէին եւս, եթէ գանձք նախարարացն անդ իցեն, վասն այնորիկ եւ* յանխնայ յուզէին զվայրսն:

43 *Նա* եւ տեսին *եւս* անդ ի գեւղս երկուս, *որ զեկեղեցիսն այրեցեալ էր. առաւել եւս վասն այնր ի նախանձ բարկութեան բրդեցան»:*

*Նախադասությունների ընդգծված հատվածներով վերականգնվում է պատառիկում պակասող հատվածը, որոնց համադրությամբ, նախադասության հիմնական միտքը, ասելիքը, սահուն շարադասությամբ կարող էր լինել՝*

« [*...Եւ գունդ մի արքունի*] յանխն[*այ յուզէր զվայրսն,*] գտեալ [ *անդ ի գեւղս երկուս...*]»:

*Ստորև ներկայացվող աղյուսակը պատառիկի վերականգնված 2բ էջի աջ սյունակի վերջին երեք տողերն են: Ինչպես և նախորդներում, նշված են՝ ձախ կողմում տողերի հերթական համարները, իսկ աջում՝ տողում գրերի հնարավոր քանակը:*

| | | |
|---|---|---|
| 18. | «ՍԱՆՔՆ: [42-43....*Եւ գունդ մի արքունի*] | 21 |
| 19. | ՅԱՆԽՆ[*այ յուզէր զվայրսն,*] | 20 |
| 20. | ԳՏԵԱԼ [ *անդ ի գեւղս երկուս*]» | 20 |

*Ամբողջացնելով պատառիկի վերծանությունը, ստորև, ըստ գիտական հրատարակության, ներկայացնում ենք Եղիշեի «Վարդանանց պատերազմի» Ե. եղանակը, նախադասություն առ նախադասություն, նկարագրված իրադարձությունների սղագրությամբ, դրվագ առ դրվագ նշելով իրադարձությունների առկայությունը պատառիկում։*

*Ինչպես իր տեղում նշել էինք, պատառիկի 1ա էջում պահպանված երկրորդ տողը (առաջին տողը վնասված է) «Վարդանանց պատերազմի» առաջին նախադասության վերջից է՝* «զբազումս բազում անգամ ի բազում տեղիս», *որին միանում է երկրորդ նախադասությունը որոշ կարևոր տարընթերցումներով*[36]*։ Այնուհետև՝ 3-4 Նախադասությունները չկան պատառիկում։ 5-10 Նախադասությունները այլ շարադասությամբ՝ առանց ճակատամարտին մասնակցած նախարարների անունների թվարկման (9-րդ նախադասություն), հիմնական միտքը արտահայտում են։ Որից հետո չկան ճակատամարտին Հովսեփ և Ղևոնդ երեցների, ինչպես նաև այլ քահանաների ու պաշտոնյաների մասնակցության մասին դրվագը (11-12), Վարդան Մամիկոնյան սպարապետի զորքի առջև արտասանած ճառը (13-43), զինվորների նկատմամբ նրա տածած հոգատարության, խնամքի, նրանց զինելու, ոգևորելու, Մակաբայեցոց գրքից հատվածներ կարդալու, այնուհետև զորքը ճակատամարտի դաշտում դասավորելու նկարագրությունը (44-51)։ Այնուհետև պարսկական զորքի Հեր և Զարևան հասնելը, որտեղ սրանք բանակում և ամրություններ են կառուցում, ապա ասպատակում շրջակա գավառները (52-54), իսկ հետո Առանձնար Ամատունու գլխավորությամբ հայոց զորքի հարձակվելը և պարսից ասպատակող զորաբանակի ջախջախվելը (55-57), Վասակ Սյունի մարզպանի բանագնացներ ուղարկելը հայոց բանակ (58-59), Ղևոնդ երեցի պատասխան խոսքը բանագնացներին (60-111), Ղևոնդի խոսքից հետո պատարագ անելն ու երեխաներին մկրտելը, որից հետո Հայոց զորք երդվում է (112-114)։ Ապարդյուն բանագնացությունից հետո պարսիկների հայոց ռազմավարության մասին հարցուփորձ անելը մարզպանին և հետո մարտական փղերը ըստ գնդերի տեղաբաշխելը (115-116), մարզպանի պարսիկ զորավարներին ուղղված խոսքը, որից հետո նա պարսից զորքին տարբերանշաններ ու դրոշներ է տալիս ու դասավորում զորքը (117-126)։ Իսկ նույն ժամանակ սպարապետը մարտական գիրքերով դասավորում է հայոց զորքը (127-132), այնուհետև պատմում է ճակատամարտին կողմերի պատրաստության ու զորքերի նկարագրության մասին (133-136), և հետո Ճակատամարտի նկարագրությունը, սպարապետի ներխու-*

[36] *Երկրորդ նախադասությունում չկան* «մարդիկ», «էին», «խնայեցին», «իբրեւ զանարի», «գոլով վատասիրտք», «կամ» *բառերն ու* «զի ի նմանէ միայն ... ի միտս իւրեանց» *հատվածը։*

*ժելը պարսից բանակի աջ թևը (137-141), պարսից հակահարվածն ու սպարապետի շրջապատման մեջ ընկնելը (142-145):*

*Հաջորդ* 146-րդ *նախադասությունում՝ որը մասամբ կա պատառիկում խոսվում է սպարապետի* «ոչ սակաւ նախճիրս» *գործելու և ապա զոհվելու մասին: Այստեղ մինչև* «գործեաց» *բառը պատառիկը չունի, այլ 5-10 նախադասությունների միջոցով վերականգնվելով կապվում է նախադասության* «յորում եւ ինքն…» *մասին և սահուն շարունակվում ինչպես ԳՀ-ում: Ապա ճակատամարտի նկարագրությունն ու ճակատամարտից հետո մինչև ուշ երեկո կոտորածը, մանր խմբագրումներով պատառիկում կա (147-150)*[37]*: Ճակատամարտից հետո Ավարայրի դաշտի արյունոտ տեսարանի նկարագրությունը պատառիկում չկա (151-152): Սրան հաջորդում է Եղիշեի ճակատամարտին տված գնահատականը (153-156)*[38]*: Մանր տարբերություններով նույնն է ԳՀ-ում և պատառիկում զոհված նախարարների անունների թվարկումն (157-167) ու վասն հավատո նահատակվածների թիվը՝ 1036 հոգի (168)*[39]*: Այնուհետև պատառիկում հաղորդվում է պարսից բանակի զոհված զինվորների և ազնվական ծագում ունեցողների թիվը, ապա Մուշկան Նյուսալավուրտի սրտնեղելու մասին (169-171)*[40]*:*

*Շարունակությունը՝ ուր նկարագրվում է Մուշկան Նյուսալավուրտի հոգեկան ապրումները, պատառիկը չունի (172-176)*[41]*: 173-րդ նախադասությունում Մուշկան Նյուսալավուրտը ճակատամարտի նման ելքի համար երկյուղում է թագավորին տեղեկացնել: Այնուհետև Վասակի մասին է, թէ ինչպես է նա ամրություններում ապաստանածների դեմ ծրագրում մարտնչել, խոստումներով հորդորում հանձնվել, իսկ զորքն Հայոց չի հավատում տրված խոստումներին: Զ. եղանակի 1-7 նախադասությունները, որ նույնպես պատառիկում չկան, ամրոցում ապաստանածների վրա Մուշկան Նյուսալավուրտի*

---

[37] *150-րդ նախադասությունում պատառիկը չունի* «միասանգամ», «անդադար լինէր գործ դառնութեանն», *մնացածը մանր տարբերություններով նույնն է:*

[38] *153-ում պատառիկը չունի* «այլ ճաշք ընդ ճաշս ելեալ՝ երկոքին կողմանքն ի պարտութիւն մատնեցան», *156-ում չկա* «որ անդէն ի տեղւոջն կատարեցան» *մասը:*

[39] *Պատառիկն ունի շարունակություն, իսկ ԳՀ-ն ոչ՝* «որք մեծաւ ճգնութեամբ վասն սուրբ հաւատոց ի վերայ սուրբ եկեղեցւոյ պատերազմեալք կատարեցան ի Ք[րիստո]ս» *հատվածը:*

[40] *171-ից պատառիկն ունի* «զի ետես եւթնապատիկ զհարուածս» *փոխարեն ԳՀ-ի* «Մանաւանդ իբրեւ ետես զանհնարին հարուածսն»: *Այնուհետև պատառիկը չունի* «…բեկաւ անկաւ զաւրութիւն ուժոյն իւրոյ…» *մինչև Զ. եղանակի 7-րդ նախադասության* «…իբրեւ ոչ կամաւ իջեալ կացին առաջի,…»: *Փոխարենը այս ամբողջ հատվածի Ե. եղանակը, առանց Զ.-ի վերնագրի, միմյանց է կապվում հետևյալ հատվածով* «…իսկ եին ի գնդին Հայոց մասն ինչ յամրոցի, եւ երթեալ զաւրն պարսից գալ ի խաղաղութիւն, որոց եկեալ…» *այնուհետև ինչպես ԳՀ բնագրում:*

[41] *172-րդ նախադասությունը կարծես 171-ի ավելի ընդարձակ տարբերակը լինի:*

*դրդմամբ պարսից զորքերի հարձակման, ձախողման, նորից՝ մի քանի անգամ երդումներով ամրոցում ապաստանածներին հանձնվելու հորդորների և նրանց չհավատալու մասին է: Այնուհետև Բակ անունով զորականի բերդից դուրս գալու, Վասակին ամբաստանելու և գիշերով, յոթ հարյուր զինակիցների հետ միասին բերդից դուրս գալու և փախուստի դիմելու մասին է:*

*Երկու հարյուր նահատակների վերջին խոսքը պատառիկում և ԳՀ բնագրում քերականական մանր տարբերություններով նույնն են (8-10):*

*Պատառիկն այնուհետև չունի Հովսեփ և Ղևոնդ երեցների ու նրանց ընկերակիցների հանձնվելու, արքունիք բողոքելու, նրանց գերեվարման մասին պատմությունը: Մյուսները չհավատալով և պարսից խոստումները մերժելով՝ մեկը մյուսին քաջալերում են, թողնում իրենց տները, ապաստան գտնում լեռներում և անտառներում, ապավինում Խաղտիքի, Տմորիքի, Արցախի ամրոցներին: Պարսիկները օգնության եկած զորքերով արշավում են երկրի խորքերը, ճակատ տալիս Կապույտ լեռան ամրություններում ապաստանածներին: Իսկ Արշեն անունով մի քահանա հավատալով իջնում է ամրոցից, սակայն նրան եւ նրա ընկերակիցներին գերեվարում են: Իսկ Տմորիքում ապաստան գտածները իջնելով ամրություններից հարձակվում են պարսից զորքերի վրա և ջախջախում: Նույնպես և Խաղտիքում ապաստանածները հարձակվում և ջախջախում են Տայքում գտնվող պարսից զորքերը: Այս ամենը պատառիկը չունի (11-41): Եւ վերջապես պատառիկն ընդհատվում է արքունի զորքերի հետապնդումների, ավարառությունների, հայոց հակահարված տալու ու երկու հրկիզված եկեղեցիների մասին դրվագով (42-43)[42]:*

*Մնում է պատասխանել ամենակարևոր հարցին՝ պատառիկը Ճառընտիրի, Հայսմավուրքի, Պատմագրքի մաս է, թե խմբագրված, համառոտված «Վարդանանց պատերազմի» հնագույն, նախնական օրինակի մասունք:*

*Պատառիկի բնագրում Ե. եղանակի 176 նախադասություններից շուրջ 148-ը (3-4, 5-10, 11-145, 151-152, 172-176), իսկ Զ եղանակի 1-43 նախադասությունների միջև շուրջ 41-ը (1-7; 11-43) այսպիսով պակասում են[43]: Գիտական հրատարակության բնագրի համար օգտագործված ձեռագիր և տպագիր օրինակներից և ոչ մեկը այսօրինակ տարընթերցում չունի: Միայն Զ. եղանակի համար ԳՀ ծանոթությունում նշված է, որ 18 Ճառընտիրներ «լրիվ տեքստ չեն տալիս, այլ վերապատմում են, մասամբ կրճատում», բոլորովին չունեն 1-104 (կամ 107) նախադասությունները և դրանցում նկարագրված իրադարձու-*

[42] Այս երկու նախադասություններով վերականգնվել են պատառիկի 2բ էջի վերջին երեք տողերը:

[43] Պակասող նախադասություններից վեցը մասնակիորեն կամ ամբողջովին ձևափոխված են պատառիկում՝ Ե. եղանակում 4-ը, իսկ Զ.-ում 2-ը:

*թյունները: Համառոտելու կամ վերապատմելու իմաստով ինչ որ հարմար է Չ. եղանակին, որի հիմնական նյութը կարող ենք համարել Տիզբոնի դատավարությունը, բոլորովին անմեկնելի է Ե. եղանակի համար, որը գրեթե ամբողջությամբ ներկայացնում է Ավարայրի ճակատամարտի նկարագրությունը: Անիմաստ է անգամ այս ճակատամարտի համառոտելը: Իրադարձությունների ողջ շղթայի մեջ այն ամենակարևորն ու հիմնական դրվագն է:*

*Իսկական համառոտագրումը Հայսմավուրքում «Արաց Բ., Օգոստոսի Է. Նահատակութիւն Սրբոց Վարդանանցն ի պատերազմն Պարսից» վերտառությամբ վկայաբանությունն է, որ պատառիկի հետ բաղդատելի չէ: Այն արդեն հայտնի «Վարդանանց պատերազմի» բնագրի մի պարզ սղագրություն է:*

*Եթե պատառիկի բնագիրը Ճառընտիրի կամ Հայսմավուրքի անհայտ մի խմբագրություն չէ, ապա կարող ենք արդյոք համարել, որ պատառիկը «Վարդանանց պատերազմի» մի նախնական բնագրի մասունք է, ինչպես ենթադրում էր Գ. Խալաթյանցը: Այս ենթադրությունը հեռու չէ իրական լինելուց, եթե ընդունենք, որ նախնական բնագրում չեն եղել Ե. եղանակի Ավարայրի ճակատամարտի, ինչպես նաև Չ. եղանակի տիզբոնյան դատավարության ընդարձակ նկարագրություններն ու Է. եղանակում Ղևոնդյանց վկայաբանությունն ամբողջությամբ: Հնարավո՞ր է արդյոք, որ հետագայում Եղիշեի բնագրին նախ Ավարայրի ճակատամարտին նվիրված մի ինչ-որ ճառ հավելված լինի, ապա ավելի ուշ տիզբոնյան դատավարությունն ու Ղևոնդյանց քահանայից վկայաբանությունը: Այս տեսակետի օգտին չե՞ն արդյոք խոսում «Վարդանանց պատերազմի» եղանակների վերնագրերում հայտնի խճողումների փաստը: Չէ՞ որ մեր ճանաչած «Վարդանանց պատերազմի» բնագրի նախադրությունում հեղինակի կողմից շարադրված եղանակների վերնագրերից միայն առաջին երեքն են նույնանում, իսկ Դ. եղանակը փոքր-ինչ տարբերությամբ է միայն համապատասխանում բնագրում եղած համապատասխան եղանակների վերնագրերին: Մնացած Ե.[44], Չ[45]. և Է[46]. եղանակները նախադրությունում շարադրված*

---

[44] Նախադրությունում Ե. եղանակն ունի «զՅարձակումն արեւելեայց», իսկ բնագրում «Կրկին անգամ ընդդէմ կալ հայոց պատերազմաւ թագաւորին պարսից» ձևը: ԳՀ-ի համար օգտագործված ձեռագրերից և ոչ մեկում չկա «զՅարձակումն արեւելեայց» ձեւով վերնագիր, Ճառընտիրներում հայտնի է նաև «Վկայաբանութիւն սրբոց Վարդանանց» կամ «Պատմութիւն պատերազմին սրբոց Վարդանանցն» ձևով:

[45] Նախադրությունում Չ. եղանակն ունի «զԸնդդիմմանալն Հայոց պատերազմաւ», իսկ բնագրում «Յորում կարգագիր դարձեալ առաքինութիւնն հայոց եւ չարագոյն եւս երեւի անաւէնութիւնն Վասակայ»: Միայն մեկ տպագիր՝ Անձնացոց օրինակն ունի «յերկարումն իրացն խռովութեան» ձևը, որը սակայն որպես Չ. եղանակ ընդունված բնագիրը ճանաչում է որպես Է. եղանակ, իսկ որպես Չ. եղանակ՝ «Պատերազմ հայոց» վերնագրով, ճանաչում է Ե. եղանակի 115-րդ նախադասությունից մինչև վերջ ընկած հատվածը:

վերնագրերից բոլորովին տարբեր վերնագրեր ունեն բնագրում:

Ասպարեզում այս հարցերին նվիրված բազմաթիվ հետազոտություններ ու տեսակետներ կան, որոնք կարող են լրացնել կամ ընդհակառակը հերքել առաջ քաշված վարկածները: Նոր վերծանության առաջ քաշած հարցադրումներին պետք է պատասխանել ոչ միայն պատառիկում պահպանված բնագրի տեքստաբանական-բնագրագիտական քննությամբ, այլև գիտական հրատարակության համար օգտագործված բոլոր տարընթերցումները, ինչպես նաև «Վարդանանց պատերազմի» ուսումնասիրմանը նվիրված գիտական հարուստ ժառանգությունը նկատի ունենալով:

Ներկա հրապարկման հիմնական նպատակն իրականացրած համարելով, թողնելով Եղիշեի «Վարդանանց պատերազմի» համակողմանի ուսումնասիրությունը եւ մեզ հայտնի «Վարդանանց պատերազմի» մասեր ունեցող պատառիկների հրապարակումը ապագային, ամփոփելով՝ ասենք, որ Լիոնի քաղաքային գրադարանի համար 17 ձեռագրում պահպանվող պատառիկն իր առաջին՝ 1893 թ-ի հրապարակումից 115 տարի հետո էլ, նոր վերծանությամբ, էլ ավելի է արժևորվում: Այն հնագույնն է Եղիշեի «Վարդանանց պատերազմի» մասեր պարունակող մեզ հայտնի բոլոր պատառիկներից: Հնագրական տեսանկյունից չափազանց ուշագրավ է և կարող է թվագրվել Է-Ը դարերով: Ամենայն հավանականությամբ՝ պատմագրքի մաս է, և ևս մեկ անգամ փաստում է Ե. Տեր-Մինասյանի այն միտքը, թե «Եղիշեի «Վարդանանց պատմության» սկզբնագիրն անկասկած Ե դարի երկրորդ կեսի 460-464 թվականների գործ է», որ գրված է ականատես մարդու կողմից, և որ հետագայում «կարող է մասնակի կետերում ենթարկված լինել որոշ խմբագրման»[47]:

[46] Նախադրությունում Է-ն ունի «զՅերկարումն իրացն խռովութեան», իսկ բնագրում «Դարձեալ վասն նորին պատերազմին եւ չարչարանաց սուրբ քահանայից» ձևը, որն այլևայլ ձեռագրերում ծանոթ է նաև «Արտաքոյ եւթն յեղանակին ութերորդ՝ վասն չարչարանաց սուրբ քահանայիցն եւ նահատակութեան» վերնագրով, իսկ Ճառընտիրների մեծ մասում «Վկայաբանութիւն սրբոց Ղեւոնդեանցն» վերտառությամբ:

[47] Տե՛ս **Եղիշե**, Վարդանի եւ հայոց պատերազմի մասին, աշխարհաբար թարգմանություն, էջ 16:

# ՀԱՎԵԼՎԱԾՆԵՐ

| Կոնիբերի վերծանությունը | Նոր վերծանություն |
|---|---|
| 1. Ջնջուած | [...] |
| 2. [ ՟ ] ՟ ՟ ՄԻ | [...]ԳԱՄ Ի |
| 3. [ ՟ ] ԱՐՍ | [...]ՈՎՆ |
| 4. [ ՟ ] ԵԱԼՔ | [...]ՌԵԱԼՔ▪ |
| 5. [ ՟ ] ՄԱՀՈՒ | [...] ՄԱՀՈՒ |
| 6. [ ՟ ] ՄԻՅԱ | [...]Մ Ի ՅԱ |
| 7. [ ՟ ] ՉԻՑ | [...]ՉԻՑ▪ |
| 8. [ ՟ ] ՑՍԻՐԵԻ | [...]Ց ՍԻՐԵ |
| 9. [ ՟ ] ՟ ՟ Ի | [...]ՈՒԹԻԻՆ |
| 10. [ ՟ ] ՟ ԵՆ | [...]ՉԻՆՉ |
| 11. [...] | [...] |
| 12. [ ՟ ] ԱՅ | [...]ԱՅՂ |
| 13. [ ՟ ] ԼԸՆ ՟ Յ | [...]Լ ԸՆԴ Ա[ստուծո]Յ, |
| 14. [ ՟ ] ԱՆ.ՈՁ | [...]ԱՆ▪ ՈՁ |
| 15. [ ՟ ] ՎԱՆԵ | [...]Վ ԱՆԵ |
| 16. [ ՟ ] ԵԼՈՎՔ | [...]ԵԼՈՎՔ՛ |
| 17. [ ՟ ] ԼԵՑԵԱ | [...]ՂԵՑԵԱ |
| 18. [ ՟ ] ՔԻ. ՅՈ | [...]ՔԻ▪ ՅՈ |
| 19. [ ՟ ] ԱՔՊԻ | [...]ՉԱՓ ՊԱ |
| 20. [ ՟ ] ՈՒ | [...]ՈՒ |

1. Համեմատական աղյուսակ
պատարիկ 1ա (Դբ-Գա) էջի ձախ սյունակի հին ու նոր վերծանությունների

**Վերծանություն** - 1ա (Դբ-Գա)

Դբ

1. [1][*ի սկզբանէ է տեսանել*]
2. [*զբազումս բազում ան*]ԳԱՄ Ի
3. [*բազում տեղիս։* [2] *որ սիր*]ՈՎՆ
4. [*Ա[ստուծո]յ զինու վա*]ՌԵԱԼՔ▪
5. [*ոչ ինչ զանգիտելով ի*] ՄԱՀՈՒ
6. [*անէ անձանց,*▪ *կա*]Մ Ի ՅԱ
7. [*փշտակութիւնէ ըն*]ՁԻՑ▪
8. [*կամ ի խողխողումա*]Ց ՍԻՐԵ
9. [*լեաց,*▪ *կամ ի գեր*]ՈՒԹԻՒՆ
10. [*է ընտանեաց,*▪ *առ ո*]ՉԻՆՉ

Գա

11. [*համարեցան զայս ամենայն.*]
12. [*անցս չարչարանաց.*▪]ԱՅՂ
13. [*միայն միաբան կա*]Լ ԸՆԴ Ա[ստուծո]Յ,
14. [5-10] [*Իբրեւ ետես Վարդ*]ԱՆ▪ ՈՉ
15. [*ինչ զանգիտեաց, այլ ժողո*]Վ ԱՆԵ
16. [*լով ամենայն միաբան*]ԵԼՈՎՔՆ
17. [*յԱրտաշատ ընդ եկեղ*]ՂԵՑԵԱ
18. [*ւ սրբոյ ուխտին Յի*]Ք[ՐԻՍՏՈՍ]Ի▪ ՅՈ
19. [*րում քաջալերեալ ան*]ՁԱՓ ՊԱ
20. [*տրաստութեամբ համագ*]ՈՒ

1. [146][*նդք հասանելով ի գործ պատե*]
2. ՐԱԶՄԻՆ ՈՉ ՍԱԿԱՒ ՆԱԽ
3. ՃԻՐՍ Ի ՏԵՂԻՈՋՆ ԳՈՐԾԷՐ Ի
4. ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ, ՅՈՐ
5. ՈՒՄ ԵՒ ԻՆՔՆ ԱՐԺԱՆԻ ԵՂԵՒ
6. ԱՌՆՈՒԼ ԶԿԱՏԱՐԵԱԼ ՆԱՀԱ
7. ՏԱԿՈՒԹԻՒՆՆ▪: [147] ԵՒ ՅԵՐԿԱ
8. ՐԵԼ ԳՈՐԾՈՅ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ՝
9. ԱՒՐՆ ՏԱՐԱԺԱՄԷՐ,▪ ԵՒ ՄԱ
10. ԻՏ ԱՌ ԵՐԵԿՍ ԿԱՐՃԱՏԷՐ.▪
11. [*բազմաց աւրհասք մահ*]
12. ՈՒ ՀԱՍԱՆԷՐ▪ ՄԱՆԱՒԱՆԴ
13. Ի ԹԱՆՁՐՈՒԹԵՆԷ ԱՆԿԵ
14. ԱԼ ԴԻԱԿԱՆՑՆ ՄԱՒՏ ԱՌ ՄԱ
15. ԻՏ ԽՏԱՑԵԱԼ ԻԲՐԵՒ ՁՓԱՅ
16. ՏԱՀԱՐՍ ՄԱՅՐԱՒՈՐԱՑ ԵՐ
17. ԵՒԵԻՆ▪ [148] ԱՆԴ ԷՐ ՏԵՍԱՆԵԼ
18. ՁՔԵԿՈՐՍ ՆԻՉԱԿԱՑՆ ԵՒ ՁԽ
19. ՈՐՏԱԿՈՒՄՆ ԱՂԵՂԱՆՑ▪.
20. ՎԱՍՆ ԱՅՆՈՐԻԿ ▪ ՈՉ ԿԱՐԵԻՆ

---

[1] *>զբազումս; >զբազումս բազում անգամ։*

[2] *մարդիք; >մարդիկ; իբրեւ զինու; բազում անգամ զինու։ >իբրեւ; վառեալք էին; եւ ոչինչ; >խնայեցին; խնայեցին զանգիտելով իբրեւ զանարի՝ (անարի) գոլով (>գոլով) կամ վատասիրտք (վատասիրտս); >կամ ի մահ անձանց; ի յափշտակութիւն; կամ ի խողխողումն սիրելեաց; ընտանեաց + ելանել ի հայրենի երկրէն եւ անկանել (անկանիլ) ի ստրկութիւն (ի ստուգութիւն ] ի ստրկութիւն) յաւտարութեան; համարեցան զայս; զայն; համարելով զայն; չարչարանացն; միաբանեցան; միաբանեալ; ընդ աստուծայ +զի ի նմանէ միայն մի՛ գերի ելցեն. եւ ամենայն երեւելի մեծութեանս զնա բաւական համարեցան՝ ընտրեալ (ընտրել; ընդրել; >ընտրեալ) ի միտս իւրեանց։*

[5-10] *Այս հատվածում պակասում է 8 տող՝ 7-ը ձախ սյունյակի ներքեւում եւ մեկ տող աջ սյունակի վերեւում։ Պակասող հատվածը վերականգնվել է 5-10-րդ և 146-րդ նախադասությունների միջոցով։*

[146] *գործեաց; գործեաց; >ի մեծ պատերազմին; ինքն + յորում տեղւոջ եւ ինքն իսկ; >իսկ; նահատակութեանն պսակ։*

[147] *յերկարեալ; երկարեալ; յերկարիլ; գործոյն; տարաժամիւր; >մօտ; առ ընդերեկս; առ երեկոյ; կարճէր; օրահանք; օրինահանք; >հասանէին; >անկեալ; անկեալ դիականացն; ~ դիականցն անկելոյ; անկեալ դիակացն; խթացեալ; >իբրեւ; զփայտահայրս (!); մայրեւորաց; >երեւեին։*

[148] *զբեկորս; զբեկումն; նիզակաց; իսկ ] եւ; >եւ; ~ զբեկումն աղեղանց եւ զխորտակումն նիզակաց; աղեղանցն; եւ ոչ իսկ; >կարէին; կարէին իսկ։*

### Վերծանություն - 1բ (Դա-Գբ)

Դա 1. [148] [*կալ ճշմարտիւ ի վերայ*]
2. ՍՈՒՐԲ ՄԱՐՄՆՈՑ ԵՐԱՆԵԼԵ
3. ԱՑՆ▪. ԵՒ ՍԱՍՏԻԿ ԽՈՒՃԱՊ
4. ՏԱԳՆԱՊԻ ԷՐ ԿՈՂՄԱՆՑՆ
5. ԵՐԿՈՑՈՒՆՑ ԱՆԿԵԼՈՑՆ▪:
6. [149] ԵՒ ՈՐ ՄՆԱՑԵԱԼՔՆ ԵԻՆ` ՎԱ
7. ՆԵԱԼՔ ԵՒ ՑՐՈՒԵԱԼՔ ԼԻՆԵԻՆ
8. Ի ԼԵՌՆԱԴԱՇՏՍՆ ▪ ԵՒ
9. ՅԱՄՈՒՐՍ ՁՈՐՈՑՆ▪. ԵՒ ՅՈՐ
10. ԺԱՄ ՊԱՏԱՀԵԻՆ ՄԻՄԵԱՆ[ց]▪`
11. [ԴԱՐՁԵԱԼ ՁՄԻՄԵԱՆՍ ՍԱ]

Գբ 12. ՏԱԿԵԻՆ▪: [150] ՄԻՆՉԵՒ Ի ՄՈՒՏՍ
13. ԱՐԵԳԱՆՆ▪ [151-152] [153] ՔԱՆԶԻ ՈՉ ԷՐ
14. ԿՈՂՄՆ` ՈՐ ՅԱՂԹԵԱՑ▪, ԵՒ
15. ԿՈՂՄՆ` ՈՐ ՊԱՐՏԵՑԱՒ▪, [154] ԲԱ
16. ՅՑ ՔԱՆԶԻ ԱՆԿԵԱԼ ԷՐ ՋԱՒ
17. ՐԱՎԱՐՆ ՀԱՅՈՑ Ի ՄԵԾ ՊԱ
18. ՏԵՐԱԶՄԻՆ▪, ՈՉ ՈՔ ԳՈՅՐ
19. ԱՅՆՈՒՀԵՏԵՒ Ի ՄԷՋ ԳԼԽ
20. ԱՒՈՐ▪, ՅՈՐ ՅԵՑԵԱԼ ԺՈՂՈՎ

1. [*եին գունդք մնացելոցն:*]
2. [155] ԹԵՊ[*էտ եւ բազում այն էր*]
3. ՈՐ ԱՊ[*րեցան` քան թէ*]
4. ՈՐ ՄԵ[*ռանն, սակայն*]
5. ՑԱՆԵ[*ալ ցրուեցան, եւ*]
6. ՀԱՍԵ[*ալ անկանէին ի տե*]
7. ՂԻՍ ՏԵ[*ղիս յամուրս աշ*]
8. ԽԱՐՀ[*ին, եւ բռնանայ*]
9. ԻՆ Ի Վ[*երայ բազում գաւ*]
10. ԱՌԱՑ [*եւ բերդից, զոր եւ ոչ*]
11. ՈՔ ԿԱ[րէր առնուլ իսկ:]
12. [156] ԵՒ Ա[*յս անուանք են քաջ*]
13. ՆԱ[*հատակացն*]
14. [157] ՅԱՁ[*գէն Մամիկոնէից*]
15. ՔԱՋՆ [*Վարդան հարեւր եր*]
16. ԵՍՈՒ[*ն եւ երեք արամբք.*]
17. [158] ՅԱՁ[*գէն Խորխոռունեաց*]
18. ԽՈՐԵ[*նն կորովի ինն եւ*]
19. ՏԱ[*սն արամբք.*]
20. [159] ՅԱՁ[*գէն Պալունեաց*]

---

[148] *>սուրբ; մարմնոցն; մարմնոց; մարմնոյ; մարմնոյն; երանելոյն Վարդանա] երանելեացն; երանելոյն; >սաստիկ; ի սաստիկ; >էր; տագնապի երկոցունց կողմանցն անգելոց; կողմանց; անկելոցն; անկանելոց*:

[149] *որք; եւ որ; էին; վատնեալ; լինէին; ի լեառն եւ ի դաշտս; լեռնադաշտսն; լեառնադաշտսն; լեռնադաշտս; ի լեռն եւ ի դաշտս; ամուրս ձորոցն; ձորոյն; պատահէին; դարձեալ +միւսանգամ; դարձեալ անդէն; սատակէին*:

[150] *եւ մինչեւ ի մուտ; ցմուտս; ցմուտ; արեգականն; արեւուն;* - Բոլոր ձեռագրերն այնուհետեւ ունեն` *արեգանն + անդադար լինէր գործ դառնութեանն (դառնութեան)*: Այս նախադասությունը նախորդ 149-ի շարունակությունն է:

[151-152] >151-152 նախադասությունները:

[153] *ոչ + եթէ; ~կողմ էր; եւ կողմ էր; եւ կամ կողմն; եւ կամ կողմ էր որ պարտեցաւ; պարտաւորեցաւ;* Բոլոր ձեռագրերն այնուհետեւ ունեն` - *պարտեցաւ + այլ քաջք ընդ քաջս ելեալ` երկոքին (երկոքեան) կողմանքն (կողմանք) ի պարտութիւն մատնեցան*:

[154] *մեծ սպարապետն ] զօրավարն; >մեծ; >ի մէջ; ի միջի; ի մէջ; ~ գլխաւոր ի մէջ; գունդք; գունդն*:

[155] *ապրեցան; ապրեցաւ; ապրեցանն; քան թէ (>թէ); քան որ եթէ; մեռան; ցրեցան; հասեալք; ի յամուրս; բազում քաղաքաց, գաւառաց եւ բերդաց; ամուր ] բազում; բերդաց; առնուլ իսկ ոք կարէր; առնուլ իսկ կարէր; զոր ոչ ոք առնուլ կարէր; >եւ բերդից, զոր եւ ոչ առնուլ իսկ ոք կարէր; >զոր եւ ոչ առնուլ իսկ ոք կարէր*:

[156] *եւ այս են անուանք; եւ այս էր; նահատակացն+որ անդէն ի տեղւոջն կատարեցան.; >որ անդէն ի տեղւոջն կատարեցան; որք*:

[157] *Մամիկովնենից; Մամիկոնենից: Վարդան քաջ; եւ երեսուն; հարիւր եւ յսուն (յիսուն) եւ երեք; արամբ:*

[158] *Խռախոռունեաց; Խորէն; տասնեւինն; արամբ >Յազգէն Խորխոռունեաց Խորենն Կորովի իննեւտասն արամբք:*

**Վերծանություն - 2ա (Աբ-Բա)**

Աա [159]*[արին Արտակ յիսուն]*
*[եւ եւթն արամբք.]*
*[[160] Յազգէն Գնթունե]*ԱՑ ՋԱՐ
*[մանալին Տաճատ]* ԻՆՆ ԵՒ
*[տասն արամբք.]*
*[[161] Յազգէն Դիմաքսե]*ՆԻՑ Ի
*[մաստունն Հմայե]*ԱԿ ՔՍԱՆ
*[եւ երկու արամբ]*Ք▪.
*[[162] Յազգէն Քաջբերու]*ՆԵԱՑ
*[հրաշակերտն Ներ]*ՍԵՀ ԵՒ
*[թն արամբք.]*
Բբ *[[163] Յազգէն Գնունեա]*Ց ՄԱՆ
*[ուկն Վահան երիւք]* ԱՐԱՄԲՔ▪.
*[[164] Յազգէն Ընծայ]*ՆՒՈՑ ԱՐ
*[դարն Արսէն եւթ]*Ն ԱՐԱՄԲՔ▪.
*[[165] Յազգէն Սրուանձ]*ՏԱՑ ՅԱ
*[ռաջադէմն Գար]*ԵԳԻՆ ԵՐ
*[կու հարազատաւք]*Ն ԵՒ ՈՒԹ
*[ուտասն արամ]*ԲՔ:
*[[166] Այս երկերիւ]*Ր ՈՒԹՍՈ^ԻՆ

*[եւ եւթն նահատակք, ընդ]*
ԻՆՆ ՄԵԾ ՆԱԽԱՐԱՐՍՆ ԱՆ
ԴԷՆ Ի ՏԵՂԻՈՋՆ ԿԱՏԱՐԵՑԱՆ▪:
[167] ԵՒ ՅԱՐՔՈՒՆԻ ՏԱՆԷ ԵՒ Ի
ՏԱՆԷՆ ԱՐԾՐՈՒՆԵԱՑ ԵՒ
ՅԻՒՐԱՔԱՆՉԻՒՐ ՅԱՅՂՈՑ ՆԱ
ԽԱՐԱՐԱՑՆ ՏԱՆԷ▪, ԹՈՂ ԶԱ
ՅՍ ԵՐԿԵՐԻՒՐ ՈՒԹՍՈՒՆ ԵՒ
ԵՒԹՆՍ▪, ԱՅՂ ԵՒՍ ԵՒԹՆ ՀԱ
ՐԻՒՐ ԵՒ ՔԱՌԱՍՈՒՆ ԱՅՐ▪, ՈՐ
ՈՑ ՋԱՆՈՒԱՆՍ ԳՐԵԱԼ ԵՆ Ի
ԴՊՐՈՒԹԵԱՆՆ ԿԵՆԱՑ ▪ ՈՐՔ
ԿԱՏԱՐԵՑԱՆ Ի ՆՄԻՆ ԱՒՈՒՐ
Ի ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ▪:[168]ԵՒ ՄԻ
ԱՀԱՄՈՒՌ ԼԻՆԻ ՀԱԶԱՐ ԵՒ Ե
ՐԵՍՈՒՆ ԵՒ ՎԵՑ ԱՅՐ▪: ՈՐՔ ՄԵ
ԾԱՒ ՃԳՆՈՒԹԵԱՄԲ ՎԱՍՆ
ՍՈՒՐԲ ՀԱՒԱՏՈՅՍ Ի ՎԵՐԱՅ
ՍՈՒՐԲ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՊԱՏԵՐ
ԱԶՄԵԱԼՔ ԿԱՏԱՐԵՑԱՆ Ի ՔՍ▪

---

[159] **Տե՛ս հաջորդ տողի ընթերցումները:**
[159] *տասնեւեւթն ] յիսուն եւ եւթն; արամբ:*
[160] *Քնթունեաց; Գթունեաց; «Դիմաքսենից, Քնթունեաց, Գնունեաց, Անձեւացեաց, Արուանձ-տա»: >Քաջբերունեաց; տասնեւինն; արամբ:*
[161] *>իմաստունն; քսան ] քսան եւ երկու; արամբ:*
[162] *արամբ;*
[163] *երեք ] երիւք); արամբ:*
[164] *Անձեւացեաց (Անձաւացեաց) ] Ընծայնոց; Ընձայնոց; Ընծայնուց; Ընձանոց; արամբ:*
[165] *Սրուանձտեա; Սրուանծտայ; Սրւածտա; Սրաւանձտայ; առաջադէմ; հարազատօք; ութեւտասն; տասնեւութն; արամբ*:
[166] *ութսուն եւ ինն; հինգ ] եւթն; մեծամեծ; ընդ նմին եւ մեծամեծ նախարարքն; ընդ մեծամեծ նախարարարցն որ անդէն; ընդ նմին ինն այր ի մեծամեծ նախարարացն որ անդէն; >ինն*:
[167] *տանէն; >եւ ի տանէն; տանէ; >եւ յարքունի տանէն; եւ յարքունի տանէն Արծրունեաց; յայլոց; այլոց; >յայլոց; նախարարաց; տանէն; եւթն; եօթն; հնգեանս ] եւթնս; եւ այլ եւս; >եւ; հարեւր; հարիւր ] եւթն հարիւր; որք; որ; զանուանս իւրաքանչիւր ի դպրութիւն կենաց գրեցին* (*գրեցան*) *ի նմին աւուր ի մեծ պատերազմին* (*ի մեծ պատերազմին կատարեցան*):
[168] *միահամուռն լինի; լինին; +ամենայնն; +ամենեքեան; ռ. եւ լդ.* (=1034); - **Բոլոր ձեռագրերում** *>որք մեծաւ ճգնութեամբ վասն սուրբ հաւատոց ի վերայ սուրբ եկեղեցւոյ պատերազմեալք կատարեցան ի քս*:

Վերծանություն - 2բ (Աա-Բբ)

| | | | | |
|---|---|---|---|---|
| Աբ | 1. | [[169] *Իսկ ի կողմանէ հեթանոսաց մե*] | 1. | [*դեռ շէն են եկեղեցիք եւ*] |
| | 2. | ՌԱՆ ՅԱՅՆՄ ԱՒՈՒՐ ▪ ԵՐԵՔ | 2. | ԱՆՔԱ[Կ *տաճար վկայից*] |
| | 3. | ՀԱԶԱՐՔ ՀԻՆԳ ՀԱՐԻՒՐ ՔԱ | 3. | ԵՒ ՄԻ[ԱԲ*ան սուրբ ուխտ*] |
| | 4. | ՌԱՍՈՒՆ ԵՒ ՋՈՐՔ ԱՐՔ: ▪ [170] ԻՆՆ | 4. | ԵԿԵՂ[Ե*ցւոյ առաքինա*] |
| | 5. | ԱՅՐ Ի ՄԵԾ ՊԱՏՈՒԱՒՈՐԱՑ[ն] | 5. | ՑԵԱԼ, Ա[*րժանի արարեր զմ*] |
| | 6. | ԷՐ, ▪ ՎԱՍՆ ՈՐՈՅ ԿԱՐԻ ՅՈՅ[ժ] | 6. | ԵԶ ԿՈՉ[*մանդ երկնաւորի։*] |
| | 7. | ԽՈՐ ԽՈՑԵՑԱՒ ՄՈՒՇԿԱՆՆ | 7. | [9] ՀԱՒԱՍ[*արեսցի մահս մեր*] |
| | 8. | ՆԻՒՍԱՂԱՒՈՒՐՏ:▪ [171] ԶԻ ԵՏԵՍ | 8. | ԸՆԴ ՄԱ[Հ *քաջ նահատակա*] |
| | 9. | ԵՒԹՆԱՊԱՏԻԿ ԶՀԱՐՈՒԱԾՍ | 9. | ՑՆ, ▪ Ե[Ի *խառնեսցի արիւ*] |
| | 10. | ԳՆԴԻՆ ԻՒՐՈՅ ՔԱՆ ԶՀԱՅՈՑ, ▪ | 10. | ՆՍ ՄԵՐ[ընդ արիւն անկե] |
| | 11. | [171-7]ԻՍԿ ԵԻՆ Ի ԳՆԴԻՆ ՀԱՅՈՑ ՄԱ | 11. | ԱԼ ՎԻՐ[*աւորացն, եւ հաճ*] |
| Բա | 12. | ՍՆ ԻՆՉ ՅԱՄՐՈՑԻ, ▪ ԵՒ ԵՐ | 12. | ԵՍՑԻ Տէր [*ընդ եկեղեցիս իւր*՝] |
| | 13. | ԹԵԱԼ ԶԱՒՐՆ ՊԱՐՍԻՑ ԳԱԼ | 13. | ԲԱԶՄՈ[Ւ*թեամբ կամաւոր*] |
| | 14. | Ի ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ, ▪ ՈՐՈՑ Ե | 14. | ԶՈՒԱՐԱ[*կացս, որ ելանեն ի*] |
| | 15. | ԿԵԱԼ, ▪ [7] ՀՐԱՄԱՅԵԱՑ ՍՊԱՆԱ | 15. | ՎԵՐԱՅ Ս[*ուրբ սեղանոյս»։10*[10] *Զայս*] |
| | 16. | ՆԵԼ Ի ՆՈՑԱՆԷ ԵՐԿԵՐԻՒՐ | 16. | ԱՍԵԼՈՎ[*ի տեղւոջն կատարե*] |
| | 17. | ԵՒ ՏԱՍՆ ԵՒ ԵՐԵՔ ԱՅՐ, [8] ▪ ՈՐՔ | 17. | ՑԱՆ ԵՐ[Կ*երիւրքն եւ երեքտա*] |
| | 18. | ԱՂԱՂԱԿԵԻՆ ԱՄԵՆԵՔԵԱՆ | 18. | ՍԱՆՔՆ:[11][[42-43] Եւ գունդ մի արfունի] |
| | 19. | ԵՒ ԱՍԵԻՆ. ▪ «ԳՈՀԱՆԱՄՔ | 19. | ՅԱՆԽՆ[այ յուզէր զվայրսն, եւ] |
| | 20. | ԶՔԷՆ Տ[է]Ր Ա[ստուա]Ծ. ▪ ԶԻ ՄԻՆՉ | 20. | ԳՏԵԱԼ [անդ ի գիւղս երկուս] |

---

[169] *ուրացելոցն; ուրացելոցն եւ հեթանոսաց; չորք արք; չորս*:

[170] *այր+ի նոցանէ; ի մեծամեծ; պատուաւորաց; վասն որոյ եւ; վասն այնորիկ եւ; >եւ; >ի; >ի խոր; Մուշկիան; Մուշկանն; Նիսալաւուրտ; Նիւսալաւուրտ; Նիսալաւուրտն*:

[171] զի ետես եւթնապատիկ զհարուածս ] Մանաւանդ իբրեւ ետես զանհնարին հարուածսն; *զհարուածս անհնարին; անհնարինս; >անհնարին; եւթնպատիկ; եռապատիկ; զիւրոյ գնդին քան զՀայոցն; իւրոյ գնդին եւթնապատիկ քան զՀայոց; զիւրոց; զՀայոց*),

[171-7] իսկ եին ի գնդին Հայոց մասն ինչ յամրոցի, ▪ եւ երթեալ զաւրն պարսից գալ ի խաղաղութիւն, ▪ որոց եկեալ, ] 171 «...բեկաւ անկաւ (*անկաւ բեկաւ*) զաւրութիւն (*ուժոյ նորա; ուժոյ իւրոյ; ուժոյ*) ուժոյն իւրոյ, եւ ոչ հանդարտէր կալ ի վերայ խորհրդոց մտացն (*եւ ոչ կարէր յանդարտել; կարէր ] հանդարտէր; խորհրդոց իւրոց; մտաց իւրոց*). քանզի ոչ (*>ոչ*) որպէս կարծէր զպատերազմն՝ (*պատերազմն*) կատարեցաւ:» - Զ.7 «...իբրեւ (*>իբրեւ*) ոչ կամաւ իջեալ կացին առաջի,...»:

[7] *հրամայեաց (եւ հրամայեաց) սպանանել ի նոցանէ երկերիւր եւ երեքտասան (տասնեւերեք) այր*):

[8] *միաբան եւ ասեն ամենեքեան; >տէր; մեր; >մեր; որ մինչդեռ; եկեղեցիքս; տաճարք; տաճար; աղօթից մերոց ] վկայից; տաճար վկայից մերոց; եկեղեցւոյս; >եւ; >զմեզ*։

[9] *հաւասարեսցի; հաւասարեսցէ; ընդ մահու; ընդ արիւնս; ընդ արեան; >արիւն (անկեալ) վիրաւորելոցն; հաճեսցի տէր կամարար; եկեղեցի; մեր]իւր; զուարակացն; սեղանոյս քո; սրբոյ սեղանոյ քո; սրբոյ սեղանոյս քո; սեղանոյ քո; սրբոյ*:

[10] *եւ զայս ասացեալ; կատարեցան ի տեղւոջն; երկերի՛ւր եւ երեքտասանքն; երեք տասանք; երկու հարիւր տասներեքն*:

[11] >11-42 նախադասութիւնները:

[42-43] Այս երկու տողերը հնարաւոր եղաւ վերականգնել միայն Զ. եղանակի 42 եւ 43 նախադասութիւնների միջոցով:

## Եղիշէ, Վասն Վարդանայ եւ հայոց պատերազմին

*Հատվածներ՝ Ե. 1-3, 146-150, 153-171, Զ. 7-11, 42-43*[48]*:*

1\. *«Մեծ է սէրն Աստուծոյ քան զամենայն մեծութիւն երկրաւոր. եւ այնպէս աներկեւղս առնէ զմարդիկ՝ իբրեւ զանմարմին զաւրս հրեշտակաց, որպէս անդստին* //1ա՝ Դբ-Գա//[*ի սկզբանէ է տեսանել զբազումս բազում ան*]գամ ի[*բազում տեղիս,*

2\. *որ սիր*]ովն [*Ա[ստուծո]յ զինու վա*]ռեալք▪ [*ոչ ինչ զանգիտելով ի*] մահու[*անէ անձանց,*▪ *կա*]մ ի յա[*փշտակութիւնէ ըն*]չից▪ [*կամ ի խողխողու- մա*]ց սիրե[*լեաց,*▪ *կամ ի գեր*]ութիւն[*է ընտանեաց,*▪ *առ ո*]չինչ [*համարեցան զայս ամենայն.*] [*անցս չարչարանաց.*▪]Այղ [*միայն միաբան կա*]լ ընդ Ա[ստուծո]յ,

[5-10] [*Իբրեւ ետես Վարդ*]ան▪ ոչ[*ինչ զանգիտեաց, այլ ժողո*]վ անե[*լով ամենայն միաբան*]ելովքն [*յԱրտաշատ ընդ եկեղ*]ղեցեա[*ւ սրբոյ ուխտին Յ[իսուս]ի*] Ք[րիստոս]ի▪ յո[*րում քաջալերեալ ան*]չափ պա[*տրաստու- թեամբ համագ*]ու 146. [*նդք հասանելով ի գործ պատե*]րազմին ոչ սակաւ նախճիրս ի տեղւոջն գործէր ի մեծ պատերազմին, յորում եւ ինքն արժանի եղեւ առնուլ զկատարեալ նահատակութիւնն▪:

147\. Եւ յերկարել գործոյ պատերազմին՝ աւրն տարաժամէր,▪ եւ մաւտ առ երեկս կարճատէր.▪ [*բազմաց աւրհասք մահ*]ու հասանէր▪ մանաւանդ ի թանձրութենէ անկեալ դիականցն մաւտ առ մաւտ խտացեալ իբրեւ զփայտահարս մայրաւորաց երեւեին▪

148\. Անդ էր տեսանել զբեկորս նիզակացն եւ զխորտակումն աղե- ղանց▪. վասն այնորիկ ▪ ոչ կարեին //1բ՝ Դա-Գբ// [*կալ ճշմարտիւ ի վե- րայ*] սուրբ մարմնոց երանելեացն▪. եւ սաստիկ խուճապ տագնապի էր կողմանցն երկոցունց անկելոցն▪: 149. Եւ որ մնացեալքն եին՝ վանեալք

[48] Սկզբում և վերջում Գհ-ից հավելել ենք նախադասությունների պակասող հատվածները, որոնք ըստ ամենայնի պետք է լինեին պատառիկի նախորդող և հաջորդող էջերում: Ուղիղ գրերով ընդգծված են պատառիկում երևացող հատվածները:

[5-10] Այս հատվածում պակասում է 8 տող՝ 7-ը ձախ սյունակի ներքևում եւ մեկ տող աջ սյու- նակի վերեւում: Պակասող հատվածը վերականգնվել է 5-10 և 146 նախադասությունների միջոցով:

եւ ցրուեալք լինեին ի լեռնադաշտսն ▪ եւ յամուրս ձորոցն▪. եւ յորժամ պատահեին միմեան[ց]▪՝ [*դարձեալ զմիմեանս սա*]տակեին▪: 150 Մինչեւ ի մուտս արեգանն[49]▪ [151-152] 153. Քանզի ոչ էր կողմն՝ որ յաղթեաց▪, եւ կողմն՝ որ պարտեցաւ▪:

154. Բայց քանզի անկեալ էր զաւրավարն Հայոց ի մեծ պատերազմին▪, ոչ ոք գոյր այնուհետեւ ի մէջ գլխաւոր▪, յոր յեցեալ ժողով[*եին զունդք մնացելոցն:*] 155. Թեպ[*էտ եւ բազում այն էր*] որ ապ[*րեցան՝ քան թէ*] որ մե[*ռանն, սակայն*] ցանե[*ալ ցրուեցան, եւ*] հասե[*ալ անկանէին ի տե*]ղիս տե[*ղիս յամուրս աշ*]խարհ[*ին, եւ բռնանայ*]ին ի վ[*երայ բազում գաւ*]առաց [*եւ բերդից, զոր եւ ոչ*]ոք կա[*րէր առնուլ իսկ:*]

156. Եւ ա[*յս անուանք են քաջ*] նա[*հատակացն*]
157. Յազ[*գէն Մամիկոնէից*] Քաջն [*Վարդան հարեւր եր*]եսու[*ն եւ երեք արամբք.*]
158. Յազ[*գէն Խորխոռունեաց*] Խորե[*նն կորովի ինն եւ*] տա[*սն արամբք.*]
159. Յազ[*գէն Պալունեաց* (2ա՝ Աբ-Բա) *արին Արտակ յիսուն եւ եւթն արամբք.*]
160. [*Յազգէն Գնթունե*]աց զաւր[*մանալին Տաճատ*] ինն եւ [*տասն արամբք.*]
161. [*Յազգէն Դիմաքսե*]նից ի[*մաստունն Հմայե*]ակ քսան [*եւ երկու արամբ*]ք▪.
162. [*Յազգէն Քաջբերու*]նեաց [*հրաշակերտն Ներ*]սեհ եւ[*թն արամբք.*]
163. [*Յազգէն Գնունեա*]ց ման[*ուկն Վահան երիւք*] արամբք▪.
164. [*Յազգէն Ընծայ*]նւոց ար[*դարն Արսէն եւթ*]ն արամբք▪.
165. [*Յազգէն Սրուանձ*]տայ յա[*ռաջադէմն Գար*]եգին եր[*կու հարազատաւք*]ն եւ ութ[*ուտասն արամ*]բք:

166. [*Այս երկերիւ*]ր ութսո[ւն] [*եւ եւթն նահատակք, ընդ*] ինն մեծ նախարարսն անդէն ի տեղւոջն կատարեցա[ն]▪: 167. Եւ յարքունի տանէ եւ ի տանէն Արծրունեաց եւ յիւրաքանչիւր յայլոց նախարարացն տանէ▪, թող զայս երկերիւր ութսուն եւ եւթնս▪, այլ եւս եւթն հարիւր եւ քառասուն այր▪, որոց զանուանս գրեալ են ի դպրութեանն կենաց ▪ որք կատարեցան ի նմին աւուր ի մեծ պատերազմին▪: 168. Եւ միահամուռ

[49] Նախորդ 149 նախադասության շարունակությունն է:
[151-152] Չկան 151-152 նախադասությունները:

լինի հազար եւ երեսուն եւ վեց այր▪, որf մեծաւ նգնութեամբ վասն սուրբ հաւատոյս ի վերայ սուրբ եկեղեցւոյ պատերազմեալf կատարե-ցան ի Ք[*րիստո*]ս▪

//2բ՝ Աա-Բբ// 169. [*Իսկ ի կողմանէ հեթանոսաց մե*]ռան յայնմ աւուր ▪ երեf հազարf հինգ հարիւր fառասուն եւ չորf արf: ▪ 170. Ինն այր ի մեծ պատուաւորաց[ն] էր, ▪ վասն որոյ կարի յոյ[ժ] խոր խոցեցաւ Մուշկանն Նիւսալաւուրտ,▪ 171. զի ետես եւթնապատիկ զհարուածս գնդին իւրոյ fան զՀայոց, ▪

[171-7]իսկ եին ի գնդին Հայոց մասն ինչ յամրոցի, ▪ եւ երթեալ զաւրն պարսից գալ ի խաղաղութիւն, ▪ որոց եկեալ, ▪ 7. հրամայեաց սպանանել ի նոցանէ երկերիւր եւ տասն եւ երեf այր, 8. ▪ որf աղաղակեին ամենեfեան եւ ասեին. ▪ «Գոհանամf զfէն Տ[*է*]ր Ա[*ստուա*]ծ. ▪ Զի մինչ[*դեռ չէին են եկեղեցիք եւ*] անfա[*կ տաճար վկայից*] եւ մի[աբ*ան սուրբ ուխտ*] եկեղ[*եցւոյ առաքինա*]ցեալ, ա[*րժանի արարեր զմ*]եզ կոչ[*մանդ երկնաւորի:*] 9. Հաւաս[*արեսցի մահս մեր*] ընդ մա[*հ քաջ նահատակա*]ցն, ▪ ե[*ւ խառնեսցի արիւ*]նս մեր [*ընդ արիւն անկե*]ալ վիր[*աւորացն, եւ հաճ*]եսցի Տէր [*ընդ եկեղեցիս իւր*՝] բազմո[*ւթեամբ կամաւոր*] զուարա[*կացս, որ ելանեն ի*] վերայ ս[*ուրբ սեղանոյս»: *10. *Զայս*] ասելով[*ի տեղւոջն կատարե*]ցան եր[կ*երիւրքն եւ երեքտա*]սանfն:

11.[11] [[42-43] *Եւ գունդ մի արքունի*] յանխն[*այ յուզէր զվայրսն, եւ*] գտեալ [*անդ ի գիւղս երկուս, որ զեկեղեցիսն այրեցեալ էր. առաւել եւս վասն այնր ի նախանձ բարկութեան բրդեցան*]»:

---

[171-7] իսկ եին ի գնդին Հայոց մասն ինչ յամրոցի, ▪ եւ երթեալ զաւրն պարսից գալ ի խաղաղութիւն, ▪ որոց եկեալ, ] 171 «...բեկաւ անկաւ (*անկաւ բեկաւ*) զաւրութիւն (*ուժոյ նորա; ուժոյ իւրոյ; ուժոյ*) ուժոյն իւրոյ, եւ ոչ հանդարտէր կալ ի վերայ խորհրդոց մտացն (*եւ ոչ կարէր յանդարտել; կարէր ] հանդարտէր; խորհրդոց իւրոց; մտաց իւրոց*). fանզի ոչ (*>ոչ*) որպէս կարծէր զպատերազմն՝ (*պատերազմն*) կատարեցաւ:» - Զ.7 «…իբրեւ (*>իբրեւ*) ոչ կամաւ իջեալ կացին առաջի,…»:

[11] Չկան 11-42 նախադասութիւնները:

[42-43] Ամբողջ Զ. եղանակում փնտրելով «յանխն» գրերը եւ «գտեալ» բառը պարունակող բառեր եւ նախադասութիւններ, այս երկու տողերը հնարաւոր եղաւ վերականգնել միայն 42 եւ 43 նախադասութիւնների միջոցով:

